ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵՎ ԱՄՆ-Ի ՊՐԵԶԻԴԵՆՏ Ջ. ՖՈՐԴԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննության առնելով 1974 թվականի նոյեմբերի 23—24-ը Վլադիվոստոկի շրջանում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Ֆորդի միջև կայացած հանդիպման արդյունքները, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը և կայացած հանդիպման կարևոր քաղաքական արդյունքներին: Այդ արդյունքները, որոնք մեծ նշանակություն ունեն խաղաղ գոյակցության սկզբունքի հիման վրա սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա զարգացման համար, նոր խթան են տալիս միջազգային լարվածության թուլացման խորացմանը, տարբեր հասարակական կարգեր ունեցող պետությունների փոխշահավետ համագործակցության ընդլայնմանը, կոնստրուկտիվ ավանդ են ներդնում ընդհանուր խաղաղության ամրապնդման գործում:*

*Հանդիպման ընթացքում կարծիքների համակողմանի և կոնստրուկտիվ փոխանակություն տեղի ունեցավ սովետա-ամերիկյան հարաբերությունների մի շարք հիմնական պրոբլեմների շուրջը: Վերստին հավաստվեց երկու պետությունների վճռականությունը անշեղորեն և լիովին կենսագործելու այն փոխադարձ պարտավորությունները, որ արձանագրված են 1972—1974 թվականներին ստորագրված փաստաթղթերում, առաջին հերթին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների հիմունքներում, միջուկային պատերազմը կանխելու համաձայնագրում և ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման մի քանի միջոցառումների վերաբերյալ համաձայնագրերում: Դա սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման ուղիով հետագա առաջընթացի խավոր նախադրյալն է՝ ի շահ երկու երկրների ժողովուրդների:*

*ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու-...ը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը նշում են սովետա-ամերիկյան հարաբե-...ունների առանձնապես կարևոր բնագավառում՝ միջուկային կոնֆլիկտի ...ասարակ պատերազմի ծագման դեմ երաշխիքներ ստեղծելու բնագավա-...մ, ձեռք բերված առաջադիմությունը:*

*Ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման հարցի առթիվ սովետա-ամերիկյան համատեղ հայտարարությունը հավաստում է այդ հարցի առթիվ երկարաժամկետ համաձայնագիր կնքելու ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի մտադրությունը: Կողմերը պայմանավորվեցին համաձայնագրի նախապատրաստությունն ավարտել մոտ ժամանակներս, այն հաշվով, որ դա ստորագրվի 1975 թվականին: Կարևոր նշանակություն ունի ձեռք բեր-...ած այն պայմանավորվածությունը, որ ստրատեգիական հարձակողական ...ռազինությունների սահմանափակման այդ նոր համաձայնագիրը, որը նա-...ևսվելու է մինչև 1985 թվականի վերջերն ընկած ժամանակահատվածի ..., հիմնված կլինի կողմերի հավասարության և միատեսակ անվտանգու-... սկզբունքի վրա:*

*...վետական Միությունում բարձր են գնահատում ձեռք բերված պայմա-*

նավորվածությունները, որոնց իրագործումը կարևոր քայլ կլինի ժողովուրդների կայուն խաղաղության և անվտանգության ճանապարհին։

Երկու երկրների կողմից խաղաղության և անվտանգության օգտին առավել սուր, դեռևս չկարգավորված քաղաքական պրոբլեմների լուծմանը աջակցելու պատրաստակամության գործնական իրականացումը, որն արտահայտված է սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեում, կարող է նպաստել միջազգային լարվածության թուլացման ուղիով հետագա առաջընթացին։ Այդ կապակցությամբ հատուկ նշանակություն ունեն այնպիսի հրատապ հարցերի վերաբերյալ բանակցությունների արդյունքները, ինչպիսիք են՝ Եվրոպայի անվտանգությունն ու համագործակցությունը, Կենտրոնական Եվրոպայի սպառազինությունների և զինված ուժերի կրճատումը, միջուկային զենքը չտարածելը, Կիպրոսի դրությունը։

Սովետական Միությունը կարևոր է համարում այն փաստը, որ հավաստված է երկու կողմերի մտադրությունը՝ բոլոր ջանքերը գործադրել ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի № 338 բանաձևի հիման վրա Մերձավոր Արևելքում արդարացի և կայուն խաղաղության արմատական հարցերի լուծմանը նպաստելու համար, հաշվի առնելով այդ շրջանի բոլոր ժողովուրդների, այդ թվում պաղեստինյան ժողովրդի, օրինական շահերը և հարգելով տվյալ շրջանի բոլոր պետությունների անկախ գոյության իրավունքը։ Ընդգծվեց Ժնևի կոնֆերանսի աշխատանքի շուտափույթ վերսկսման անհրաժեշտությունը, որը կոչված է կարևոր դեր խաղալու մերձավորարևելյան ճգնաժամի խաղաղ կարգավորման գործում։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Ֆորդի առաջին հանդիպումը, որի ընթացքում կոնստրուկտիվ կերպով քննարկվեցին սովետա-ամերիկյան հարաբերությունների, այդ թվում նաև առևտրատնտեսական հարաբերությունների բազմապիսի հարցեր, արտացոլեց կողմերի ձգտումը՝ ապահովելու սովետա-ամերիկյան հարաբերությունների անընդհատ զարգացումը, այդ պրոցեսը դարձնելու հաստատուն։ Վլադիվոստոկի հանդիպման ժամանակ ընդունված փաստաթղթերը լավ հիմք են ստեղծում այդ ուղղությամբ կատարվելիք քայլերի համար։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը ընդգծում են, որ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի և ԱՄՆ-ի պրեզիդենտի վերջին բանակցությունների արդյունքները նորից համոզիչ կերպով վկայում են, որ սովետա-ամերիկյան բարձր մակարդակի կանոնավոր հանդիպումները կարևոր գործնական նշանակություն ունեն ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների նպաստավոր զարգացումն ապահովելու համար՝ ի շահ մեր երկու երկրների ժողովուրդների, ի շահ ընդհանուր խաղաղության։

Համաշխարհային մամուլի լայն և դրական արձագանքները, որոնք ընդգծում են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Ֆորդի հանդիպման մեծ նշանակությունը, վկայում են, որ երկու երկրների հասարակայնությունը ձգտում է սպառազինությունների մրցավազքի դադարեցմանը, պատերազմի ծագման դեմ հուսալի երաշխիքների ստեղծմանը, ընդհանուր խաղաղության ամրապնդմանը։

Սովետական ժողովուրդը, միահամուռ պաշտպանելով կուսակցության լենինյան արտաքին քաղաքականությունը, Վլադիվոստոկի շրջանում կայացած հանդիպումը նոր խոշոր քայլ է համարում ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած խաղաղության ծրագրի իրականացման ճանապարհին։ Սովետական ժողովուրդը բարձր է գնահատում բանակցությունների արդյունքները և այդ գործում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ներդրած ավանդը։

ՍՍՀՄ-ի խաղաղասիրական լենինյան արտաքին քաղաքականության հաջողությունները սովետական ժողովրդին ոգեշնչում են նորանոր խիզախումների հնգամյա պլանը կատարելու գործում, նորանոր նվաճումների կոմունիստական հասարակարգի կառուցման ասպարեզում, բոլոր խաղաղասեր ուժերին օգնում են պայքարելու հանուն ժողովուրդների կայուն խաղաղության և անվտանգության։





# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱՅԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՊՐԵԶԻԴԵՆՏ Վ. ԺԻՍԿԱՐ Դ' ԷՍՏԵՆԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ֆրանսիայի Հանրապետության պրեզիդենտ Վ. Ժիսկար դ' Էստենի աշխատանքային հանդիպման արդյունքները, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը և գոհունակություն են հայտնում Ռամբույեում ձեռք բերված համաձայնությունների ու պայմանավորվածությունների առթիվ։

Ռամբույեի հանդիպումը, որը տեղի ունեցավ այն ժամանակ, երբ նշվում է ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի Հանրապետության միջև դիվանագիտական հարաբերությունների հաստատման 50-ամյակը, վերստին հավաստեց երկու երկրների համաձայնության ու համագործակցության քաղաքականության կայունությունը, որը վարվում է արդեն 1966 թվականից։

Հենց այդ քաղաքականությունը մեծ չափով ելակետային գործոն դարձավ լարվածությունը թուլացնելու, տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքի հիման վրա Արևելքի ու Արևմուտքի երկրների հարաբերությունները վերակառուցելու համար։ Անցած տարիները լիովին հաստատեցին, որ ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի համագործակցության սկզբունքների և քաղաքական կոնսուլտացիաների վերաբերյալ արձանագրության համաձայն սովետա-ֆրանսիական հարաբերությունների զարգացումը համապատասխանում է երկու երկրների ժողովուրդների ազգային շահերին և ընդհանուր միջազգային իրադրության նպաստավոր զարգացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը գտնում են, որ ընկեր Լ. Ի. Բրեժնևի և պրեզիդենտ Վ. Ժիսկար դ' Էստենի բանակցությունների կարևոր արդյունքը, բանակցություններ, որոնց համար բնորոշ էին ռեալիզմը և քննարկվող հարցերի նկատմամբ կոնստրուկտիվ մոտեցումը, ձեռք բերված այն համաձայնությունն է, որ ներկայումս լավ նախադրյալներ կան համաեվրոպական խորհրդակցությունը կարճ ժամանակամիջոցում ավարտելու, նրա երրորդ փուլը բարձր մակարդակով անցկացնելու և եզրափակիչ փաստաթղթերը ստորագրելու համար։ Խորհրդակցության հաջող ավարտումը, որը շատ կարևոր օղակ է մեր մայրցամաքում լարվածության հետագա թուլացման պրոցեսի մեջ, կնպաստի Եվրոպայում և ամբողջ աշխարհի ժողովուրդների խաղաղ հարաբերությունների հիմքերի ամրապնդմանը։

Սովետական Միությունը կարևոր է համարում այն փաստը, որ հանդիպման ընթացքում նշվեց երկու երկրների դիրքերի զուգադիպումը Մերձավոր Արևելքի դրության արմատական հարցերում, որն առաջվա պես հղի է լուրջ վտանգներով։ Երկու կողմերը արտահայտվեցին հօգուտ այն բանի, որ իսրայելական զորքերը դուրս բերվեն 1967 թվականին օկուպացված բոլոր տերիտորիաներից և որ այդ շրջանում հաստատվի արդարացի ու կայուն խաղաղու-

թյուն՝ ՄԱԿ-ի համապատասխան որոշումների հիման վրա, հարգելով այդ շրջանի բոլոր պետությունների անկախ գոյության իրավունքը: Ընդսմին հատուկ նշանակություն ունի պաղեստինյան ժողովրդի օրինական իրավունքների բավարարումը: Մերձավոր Արևելքում Սովետական Միության և Ֆրանսիայի համաձայնեցված գործողությունները կարող էին ներդրում լինել այդպիսի խաղաղ կարգավորման գործում:

Սովետական ղեկավար շրջանները, ամբողջ սովետական ժողովուրդը ողջունում են երկու Կողմերի ձգտումը հասնելու Հնդկաչինի վերաբերյալ փարիզյան համաձայնագրերի խստիվ կատարմանը:

Էական նշանակություն ունի երկու Կողմերի պատրաստակամությունը նպաստելու կիպրական պրոբլեմի կարգավորմանը՝ Կիպրոսի Հանրապետության անկախության, սուվերենության և տերիտորիալ ամբողջականության լիակատար հարգման հիման վրա:

Արդիականության ամենակարևոր պրոբլեմը սպառազինությունների մրցավազքի բեռից մարդկությանն ազատելն է: Այդ կապակցությամբ կարևոր է, որ ՍՍՀՄ-ն և Ֆրանսիան հավաստեցին իրենց հաստատ ձգտումը շարունակելու ջանքերը զինաթափման, այդ թվում միջուկային զինաթափման բնագավառում, որ նրանք առաջվա պես հանդես են գալիս զինաթափման համաշխարհային կոնֆերանսի հրավիրման օգտին:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի և պրեզիդենտ Վ. Ժիսկար դ՝ Էստենի աշխատանքային հանդիպման շնորհիվ նոր խթան տրվեց սովետա-ֆրանսիական երկկողմ հարաբերությունների զարգացմանը:

Սովետական Միությունում գոհունակությամբ ընդունեցին պրեզիդենտ Վ. Ժիսկար դ՝ Էստենի այն հայտարարությունը, որ ֆրանս-սովետական համագործակցությունը Ֆրանսիայի արտաքին քաղաքականության հիմնարար տարրն է:

Ռամբույեում ձեռք բերված այն պայմանավորվածությունը, որ այդ հարաբերությունները զարգանան ամուր, կայուն հիմքի վրա, որ դրանք ավելի ու ավելի գործուն բնույթստանան, լայն հեռանկարներ է բացում սովետա-ֆրանսիական համագործակցության համար: Հիմա հարկավոր է այդ պայմանավորվածությունը լրացնել նորանոր կոնկրետ գործերով: Սովետական կողմը հաստատ վճռականություն է արտահայտում ընթանալու այդ ուղիով:

Սովետական Միությունում գոհունակությամբ են նշում, որ բարձր մակարդակի նոր հանդիպումը զգալիորեն նպաստեց երկու երկրների տնտեսական համագործակցության ընդլայնմանը և խորացմանը, որը նրանց հարաբերությունների էական հիմքերից մեկն է: Տնտեսական ու վարկային հարցերի վերաբերյալ Ռամբույեում ստորագրված սովետա-ֆրանսիական փաստաթղթերը և առաջին հերթին 1975—1979 թվականների տնտեսական համագործակցության մասին համաձայնագիրը տարբեր սոցիալական կարգեր ունեցող երկրների փոխշահավետ տնտեսական հարաբերությունների զարգացման ակնբախ օրինակ է:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցը վերստին ցույց տվեց բարձր մակարդակի կանոնավոր հանդիպումների կարևոր դերը հասունացած միջազգային պրոբլեմների լուծման համար, լարվածության թուլացման պրոցեսի շարունակման, պետությունների փոխշահավետ համագործակցության զարգացման համար: ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի հարաբերությունների հետագա զարգացման վերաբերյալ ստորագրված համաձայնագրերի և ձեռք բերված պայմանավորվածությունների իրականացումը մեծ նշանակություն կունենա Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղության ու անվտանգության ամրապնդման համար:

Սովետական Միության և Ֆրանսիայի համաձայնության ու համագործակցության քաղաքականությունը լայն աջակցություն է գտնում երկու երկրների աշխատավորության կողմից:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Նոյեմբերի 27-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենում, որտեղ քննարկվեց կազմակերպական հարց:

Պլենումը ընկ. Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆԻՆ ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարի ու բյուրոյի անդամի պարտականություններից և բավարարեց նրա խնդրանքը կենսաթոշակի անցնելու մասին:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընտրվեց ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ, որն աշխատում էր որպես Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի առաջին տեղակալ ընկ. Ն. Ա. ՊԵՏՐՈՎԻՉԵՎԸ:

## ԿԱՐԵՆ ՍԵՐՈԲԻ ԴԵՄԻՐՃՅԱՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ



Ծնվել է 1932 թվականին, Երևան քաղաքում: ՍՄԿԿ անդամ է 1955 թվականից, կրթությունը՝ բարձրագույն, ավարտել է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտը և ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցը:

1954 թվականից մինչև 1958 թվականը աշխատել է որպես Լենինգրադ քաղաքի գիտահետազոտական ինստիտուտի ինժեներ-կոնստրուկտոր, խմբի ղեկավար, Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի ավագ վարպետ, արտադրամասի պետ, իսկ ապա ընտրվել է նույն գործարանի կուսկոմիտեի քարտուղար: 1961 թվականին, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր բարձրագույն կուսակցական դպրոցն ավարտելուց հետո, աշխատել է որպես էլեկտրատեխնիկական գործարանի գլխավոր ինժեներ, դիրեկտոր:

1966 թվականից մինչև 1972 թվականը աշխատել է որպես Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի քարտուղար, երկրորդ քարտուղար: 1972 թվականի նոյեմբերին ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ընտրվում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար:

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է, պարգևատրված է Աշխատանքային կարմիր դրոշի երկու շքանշանով, մեդալներով:

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. Թ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ

*Շինարարական մեծ հրապարակներով է ծածկված մեր ընդարձակ հայրենիքը։ Կառուցվում են հզոր էլեկտրակայաններ, հսկա գործարաններ, երկարաձիգ երկաթուղային և ավտոմոբիլային մայրուղիներ։ Բնակարանային շինարարությամբ Սովետական Միությունը աշխարհում գրավում է առաջին տեղը։ Երկրի ընդհանուր համընթացի հետ է քայլում ՀՍՍՀ-ն։ Մեր հանրապետությունում կառուցվում է հզոր ատոմային էլեկտրակայանը, մեծ աշխատանքներ են տարվում Արփա գետի ջուրը լցնելու Սևան, կառուցվում են բազմաթիվ գործարաններ, արտադրամասեր, դպրոցական, առողջապահական, կուլտուրական օբյեկտներ, լայն թափով առաջ է գնում բնակարանային շինարարությունը։*

*Երկրի զարգացման գլխավոր տնտեսական խնդրի լուծման գործում կարևոր տեղ է հատկացվում կապիտալ շինարարության պրոբլեմին, որը, ինչպես կուսակցության XXIV համագումարում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, մեր ժողտնտեսության ամենահրատապ պրոբլեմներից է։*

*1971—1975 թթ. ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանով նախատեսված կապիտալ շինարարության բարձր տեմպերի ու մեծ ծավալի կապակցությամբ լուրջ խնդիրներ են առաջադրվում հանրապետության շինարարներին։ Այդ ժամանակահատվածում ֆինանսավորման բոլոր աղբյուրներով կապիտալ շինարարության համար նախատեսված է 4 մլրդ 730 մլն ռուբլի, որը 40 տոկոսով գերազանցում է նախկին հնգամյակի կապիտալ ներդրումների ծավալը։ Ընդ որում, պետական կապիտալ ներդրումները կազմում են 4 մլրդ 100 մլն ռուբլի։*

*Պետական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալից արդյունաբերական նշանակություն ունեցող օբյեկտների շինարարության համար նախատեսված է 2 մլրդ 893 մլն ռուբլի, իսկ բնակարանային և կոմունալ, լուսավորության, կուլտուրայի, առողջապահության և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի օբյեկտների շինարարության համար՝ մեկ մլրդ 215 մլն ռուբլի, որը 235 մլն-ով ավելի է ութերորդ հնգամյակում նույն ճյուղերի համար ծախսված գումարներից։ Կապիտալ ներդրումների նման աճը ապահովում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համամասնական զարգացումը։*

*Ընթացիկ հնգամյակում հատուկ ուշադրություն է նվիրվում էներգետիկ բազայի զարգացմանը, որի ընդարձակման համար նախատեսված է 460 մլն*



*ռուբլի։ Հանրապետությունում լրացուցիչ կգործարկվեն մեկ մլն 886 հազար կվտ էներգետիկ հզորություններ, որոնք հնարավորություն կընձեռեն էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնել 1,8 անգամ։*

*Ավելի արագ տեմպերով կաճի գունավոր մետալուրգիան, որի զարգացման համար իններորդ հնգամյակում նախատեսված են 274 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։ Կգործարկվեն մի շարք արտադրակարողություններ, այդ թվում՝ Զոդի ոսկու հանքի կոմբինատը։*

*Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի երկրորդ հերթի, Շինուհայրի ռետինե կոշիկի գործարանի շինարարության, Երևանի և Կիրովականի քիմիական կոմբինատների կարողությունների ընդլայնման շնորհիվ կզարգանա քիմիական արդյունաբերությունը։ Այդ ճյուղի զարգացման նպատակների համար նախատեսվում են հրացնել 230 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։*

*Չարենցավանի լիվինի գործարանի և Աբովյանի բիոքիմիական պրեպարատների գործարանի գործարկմամբ հանրապետությունում ստեղծվեց հեռանկարային ժամանակակից արդյունաբերության մի ճյուղ՝ միկրոկենսաբանական արդյունաբերություն։*

*Ինչպես նախորդ հնգամյակում, բարձր տեմպերով կաճեն մեքենաշինությունն ու մետաղամշակությունը։ Արդյունաբերության այդ ճյուղի գործող ձեռնարկությունների ընդլայնման և նորերի կառուցման համար նախատեսված կապիտալ ներդրումների ծավալը հասնում է 285 մլն ռուբլու։*

*Բնակչության հարաճուն պահանջմունքների բավարարման հիմնական խնդրի լուծման նպատակով, հատուկ ուշադրություն է նվիրվում թեթև, սննդի, մսի-կաթի, փայտամշակման և տեղական արդյունաբերության զարգացմանը։ Այդ նպատակների համար նախատեսված են ավելի քան 293 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ, որոնք հնարավորություն կընձեռեն շահագործման հանձնել նոր օբյեկտներ, այդ թվում՝ ձեռնոցների գործարան Ղափանում, կանացի արդուզարդի առարկաների ֆաբրիկա Չարենցավանում։ Կվերակառուցվեն Երևանի № 1 տրիկոտաժի ֆաբրիկան և տեքստիլ ու կոշիկի արդյունաբերության մի շարք այլ ձեռնարկություններ։ Ախթալայում կկառուցվեն պահածոների, Լենինականում՝ հացի, Աբովյանում՝ գարեջրի գործարաններ։ Կավարտվի Երևանի և Ախուրյանի կաթի կոմբինատների ու պանրի մի շարք գործարանների շինարարությունը։*

*Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվները, մեծ ուշադրություն է հատկացվելու գյուղատնտեսության զարգացմանը։ Գյուղատնտեսության զարգացման կոմպլեքսային ողջ աշխատանքների իրականացման համար ընթացիկ հնգամյակում նախատեսված է 844 մլն ռուբլուց ավելի կապիտալ ներդրում։ Հսկայական միջոցներ են տրամադրված թռչնաբուծական ֆաբրիկաների և անասնապահական համալիրների կառուցմանը, որը նպատակ ունի շեշտակի ավելացնել մսի արտադրությունը հանրապետությունում։ Կավարտվի թռչնաբուծական ֆաբրիկաների շինարարությունը Երևանում, Լենինականում, Էջմիածնում, Սևանում, Լուսակերտում և Բարձրաշենում։ Նախատեսվում են նորերը Երևանում և Վարդենիսում։*

*Ընթացիկ հնգամյակում նույնպես մեծ տեղ է հատկացվում բնակարանային, ինչպես նաև կուլտուրայի, լուսավորության և առողջապահության օբյեկտների շինարարությանը։*

*Կապիտալ շինարարության շեշտակի աճը պահանջում է զգալի ավելացնել շինանյութերի, շինարարական կոնստրուկցիաների և դետալների արտադրությունը, բարձրացնել շինարարական ինդուստրիայի տեխնիկական մակարդակը։ Այդ նպատակների համար իններորդ հնգամյակում նախատեսված է 223 մլն ռուբլու կապիտալ ներդրում։*

*Ընթացիկ հնգամյակի անցած երեք տարիներին զգալի աշխատանք է տարվել կապիտալ շինարարության մեծ ծրագրի իրականացման համար։ Այդ ժամանակամիջոցում պետական և կոոպերատիվ ձեռնարկությունները շահագործման են հանձնել մոտ 2 մլրդ ռուբլու արժողությամբ հիմնական ֆոնդեր։ Գործարկվել են տասնյակ ձեռնարկություններ, օրինակ, Հրազդանի շրջանային*

պետական էլեկտրակայանը՝ 801 հազար կվտ հզորությամբ, լիվինի արտադրության գործարանը (տարեկան 1.300 տոննա հզորությամբ), Կիրովականի կաշույքի ֆաբրիկան (տարեկան կթողարկի 5,6 մլն ռուբլու արտադրանք), պանրի գործարանները՝ Նոյեմբերյանում, Կամոյում, Բայանդուրում, Մարտունիում ու Արթիկում, թռչնաբուծական ֆաբրիկան՝ Բարձրաշենում և խոզի մսի արտադրության համալիրը Սովետաշենում, Իջևանի բենտոնիտի կոմբինատը, բիոքիմիական պրեպարատների գործարանը՝ Աբովյանում։

Շահագործման են հանձնվել արտադրական նոր տեղամասեր, այդ թվում՝ կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի արտադրա-տեխնոլոգիական մասնաշենքը, էլեկտրապարատների գործարանի արտադրական նոր տեղամասը, Չարենցավանի գործիքաշինական, ոսկերչական, Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների արտադրական նոր մասնաշենքեր և այլն։

Լուրջ ուշադրություն է նվիրվում նաև շինարարական ինդուստրիայի զարգացմանը։ ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրությունը շահագործման է հանձնել 72 հազար խմ հզորությամբ հավաքովի երկաթ-բետոնի արտադրությունը, իսկ գյուղական շինարարությանը՝ 34 հազար խմ։ Աբովյանում սկսվել է երկաթ-բետոնե կառուցվածքների 152 հազար խմ արտադրական հզորությամբ, էջմիածնում՝ խոշոր պանելային 58 հազար քմ հզորությամբ տնաշինական գործարանների շինարարությունը, որոնք նախատեսված են գործարկել 1975 թ.։

Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի Մասիսի՝ արտասահմանյան սարքավորումներով կառուցվող գործարանը, որը տարեկան կթողարկի 600 հազար քմ լուսամուտներ և դռներ։ Բացի այդ, կգործարկվեն մի շարք արտադրակարողություններ, որոնք կարտադրեն տարբեր տեսակի շինանյութեր և կառուցվածքներ։

***

Պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների ընդհանուր կապիտալ ներդրումների ծավալը հնգամյակի երեք տարում կազմեց 2 մլրդ 436 մլն ռուբլի, որը 697 մլն-ով ավելի է ութերորդ հնգամյակի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ։ Հետևապես, կապիտալ ներդրումների ծավալի աճը երեք տարիների ընթացքում կազմեց 40,1 տոկոս։ Այդ ընթացքում շինկազմակերպությունները կատարել են մեկ մլրդ 545 մլն ռուբլու կապալառու աշխատանք։

Միաժամանակ կապիտալ շինարարության տեմպերը դեռևս զգալիորեն ետ են մնում պլանային առաջադրանքներից։

Հնգամյակի երեք տարիներին շահագործման չեն հանձնվել մոտ 520 մլն ռուբլու արժողությամբ հիմնական ֆոնդեր. միայն կենտրոնացված պետական կապիտալ ներդրումներից չի իրացված 118 մլն 700 հազար ռուբլի։ Դրա հետևանքով ժողտնտեսության անհրաժեշտ արդյունաբերական նշանակության բազմաթիվ օբյեկտներ, ինչպես և բնակելի շենքեր, կուլտուր-կենցաղային ձեռնարկություններ և ժողկրթության մի շարք կառույցներ շահագործման չեն հանձնվել։ Այս առումով մեծ և պատասխանատու են շինարարների խնդիրները՝ իններորդ հնգամյակի որոշիչ, ինչպես և գալիք տարիներին։

Ընթացիկ տարվա 9 ամիսներին շինկազմակերպությունները կատարել են 517 մլն 753 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք (100,3 տոկոս), սակայն կապալառու կազմակերպությունների կատարած ընդհանուր շինմոնտաժային աշխատանքների արդյունքները դեռևս անբավարար են։ ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության և գյուղական շինարարության մինիստրությունների, ինչպես նաև շինարարական և մոնտաժային մյուս կազմակերպությունների շատ տրեստներ չեն կատարել ինն ամսվա պետական առաջադրանքները։ Ետ են մնում արդյունաբերական շինարարության մինիստրության «Երարդշին», «Կիրշին», «Ախթալշին», «Ջերմուկշին», «Բարձրաբերձշին» տրեստները, գյուղակական շինարարության մինիստրության № № 2, 3, 12 տրեստները,



ՍՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության № 8 թունելային ջոկատը և № 160 շինմոնտաժային վարչությունը, «Յումմոնտաժավտոմատիկա» տրեստի Երևանի մոնտաժային վարչությունը, ՍՍՀՄ մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների մինիստրության Երևանի մոնտաժային տեղամասը, ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության շինարարական տրեստը և այլ կազմակերպություններ։ Հունվար-սեպտեմբեր ամիսներին չեն գործարկվել «Պոլիվինիլացետատ» գործարանի տարեկան 500 տոննա պոլիվինիլբուտիրալի արտադրակարողությունները, Հոկտեմբերյանի կաշույքի ֆաբրիկայի, Երևանի կաթի կոմբինատի պաղպաղակի արտադրության ու պահպանման նոր տեղամասերը, «Հայհաստոցանորոգում» գործարանի արտադրական և ադմինիստրատիվ-կենցաղային հրապարակները, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի ծծմբաթթվի նոր կարողությունները և ուրիշ այլ օբյեկտներ։

Պետական կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին ինն ամսվա պլանով նախատեսված 367 մլն 181 հազար ռուբլու փոխարեն շահագործման են հանձնվել 261 մլն 981 հազար ռուբլու հիմնական ֆոնդեր։

Այն դեպքում, երբ մեր հանրապետությունում ինն ամսվա ընթացքում կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին շահագործման է հանձնվել 420.750 քմ ընդհանուր բնակելի տարածություն և պլանը կատարվել է 102,5 տոկոսով, ապա այդ նպատակով հատկացված կապիտալ ներդրումների իրացման պլանը կատարվել է 98,8 տոկոսով։

Ետ է մնում նաև դպրոցաշինարարությունը։ Ինն ամսում շահագործման են հանձնվել դպրոցական շենքեր՝ 27.972 աշակերտական տեղով՝ 32.648-ի փոխարեն։ Նախադպրոցական օբյեկտների շինարարության պլանը կատարվել է 66,4, առողջապահության կապիտալ ներդրումները իրացվել են 79 տոկոսով։

Այս ամենը վկայում է, որ կապիտալ շինարարության վիճակը հանրապետությունում տագնապալի է։ Այդ վիճակից դուրս գալու համար պահանջվում են մինիստրությունների, գերատեսչությունների և շինկազմակերպությունների ղեկավարների ամենօրյա ուշադրությունն ու հոգատարությունը։ Անհրաժեշտ է մանրազնին վերլուծել շինարարության վիճակը, բացահայտել խոչընդոտները և միջոցներ ձեռնարկել դրանք վերացնելու համար։

***

Շինկազմակերպությունների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ կապիտալ շինարարության թերացման պատճառը կազմակերպչական աշխատանքի բարձիթողի վիճակն է։ Բավական է նշել, որ միայն աշխատանքային ժամերի կորստյան պատճառով հնգամյակի սկզբից 15 մլն ռուբլով թերակատարվել է կապալառու աշխատանքների պլանը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որոշ կառույցներում աշխատաժամանակի կորստի հիմնական պատճառը բետոնի, քարի, շաղախի անկանոն մատակարարումն է, աշխատանքային անհրաժեշտ պայմանների բացակայությունը։ Համակողմանի չեն նախապատրաստվում օդափոխման, էլեկտրամատակարարման սխեմաները, սանտեխնիկայի մոնտաժման նյութերն ու դետալները։ Անբավարար են օգտագործվում շինարարական մեխանիզմները։ Դրանք հիմնականում աշխատում են մի հերթափոխով։ Քիչ չեն դեպքերը, երբ աշխատանքների անբավարար կազմակերպման պատճառով թանկարժեք վերամբարձ կռունկները, էքսկավատորները և այլ մեխանիզմներ պարապ են մնում, այն դեպքում, երբ դրանց պահանջը կառույցներում շատ մեծ է։

Չնայած ձեռնարկված մի շարք միջոցներին, դեռևս զգալի է բանվորական ուժի հոսունությունը։ 1974 թ. առաջին կիսամյակում շինարարական կադրերի հոսունությունը հանրապետությունում կազմել է 25 տոկոս։ Դրա հիմնական պատճառը կառուցողների նկատմամբ հոգատարության բացակայությունն է, աշխատանքի վատ կազմակերպումը։

***

Մեր հանրապետությունում կապիտալ շինարարության մեծ ծրագրի կենսագործումը պահանջում է կապիտալ ներդրումների պլանավորման շեշտակի բարելավում։ Անավարտ կառույցներն ավելանում են, որովհետև շատ մինիստրություններ ու գերատեսչություններ միջոցներ չեն ձեռնարկել դրանց շինարարության ծավալը կրճատելու համար։ Կապիտալ ներդրումները և նյութական ռեսուրսները չեն կենտրոնացնում այն կառույցներում, որոնք տեխնիկապես ավելի պատրաստ են ավարտի համար, ինչպես նաև պլանավորման ժամանակ թույլ են տրվում օբյեկտների շինարարության ժամկետների խախտումներ։ Այսպես, 1974 թ. պլանով նախատեսված է գործարկել 1.612 արդյունաբերական նշանակության օբյեկտներ, որոնց 230 մլն 400 հազարի փոխարեն հատկացվել է 221 մլն 500 հազար ռուբլի։ Ուրեմն, այդ կառույցների շինարարության վերջնական ավարտի համար պակասում է մոտ 9 միլիոն ռուբլի։ Չնայած այդ վիճակին, այս տարվա պլանի մեջ են մտցվել արդյունաբերական բազմաթիվ նոր օբյեկտներ, որոնց կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կազմում է 63 մլն ռուբլի և, միաժամանակ, դադարեցված է 11 օբյեկտների կառուցումը, որոնց մեծ մասը տեխնիկապես պատրաստ է ավարտի համար։ Կապիտալ ներդրումների օգտագործման այսպիսի պրակտիկան խանգարում է ժողովրդական տնտեսության պլանային զարգացմանը։

Մեր պլանավորման լուրջ բացերից է նաև այն, որ առանձին մինիստրություններ և գերատեսչություններ համառորեն շարունակում են պլանի մեջ մտցնել այնպիսի օբյեկտներ, որոնք ապահովված չեն հարկավոր նախագծային փաստաթղթերով և որոնց հողամասերը լիովին չեն նախապատրաստված շինարարության համար։ Անհրաժեշտ է նշել, որ այդ հարցում հաճախ մեղավոր են նաև իրենք՝ շինկազմակերպությունները և մինիստրությունները, որոնք, համաձայնելով նման օբյեկտներ պլանավորել, գործում են անբարեխիղճ պատվիրատուների քմահաճույքով և խառնաշփոթություն մտցնում ողջ հանրապետական շինարարության ընթացքի մեջ։ Նախագծային աշխատանքների բարելավումն այժմ շինարարության անհետաձգելի խնդիրներից մեկն է։ Նախագծման սխալները զգալի արգելակում են շինարարությունը։

Կառուցման ընթացքում նախագծերի մեջ ճշտումներ մտցնելու պատճառով հաճախ ավելանում է օբյեկտի նախահաշվային արժեքը. կազմալուծվում են շինարարությունը, պլանավորումը, կապալառուի տնտեսական գործունեությունը։ 1970 թ. հունվարի 1-ից մինչև 1974-ի ապրիլի 15-ը, նախագծերի և նախահաշիվների վերանայման հետևանքով, հանրապետությունում կառուցվող օբյեկտների նախահաշվային արժեքն ավելացել է 175 մլն ռուբլով։

Առանձնապես ցածր է շինանյութերի և կոնստրուկցիաների որակը։ ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը և շինարարական մինիստրություններն այս ասպարեզում շատ անելիքներ ունեն։ Շինարարների ստացած ոչ հանքային նյութերը, կոնստրուկցիաները և դետալները հաճախ չեն համապատասխանում գոյություն ունեցող ստանդարտին։ Շինանյութերի և շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններում անբավարար է որակի նկատմամբ վերահսկողությունը։ Հետևաբար, շինանյութերի արդյունաբերությամբ և շինարարությամբ զբաղվող մինիստրությունների ղեկավարները պետք է արմատապես բարելավեն իրենց ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի որակը։

Նորակառույցներում առկա լուրջ թերություններից է նաև այն, որ պատվիրատու կազմակերպություններն անբավարար են կատարում իրենց պարտականությունները։ Սարքավորումների պահանջարկը ձգձգելու հետևանքով, հաճախ վտանգվում է օբյեկտների ժամանակին շահագործման հանձնելը. սարքավորումները կամ պակասում են, կամ բոլորովին չեն լինում։ Օրինակ, Երևանի պոմպերի գործարանը մինչև այժմ չի ստացել տեխնոլոգիական հիմնական սարքավորումների ստացման կարգագրերը, «Սոյուզգլավկոմպլեկտ»-ը Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի 1974 թ. թողարկվող համալիրի համար ընթացիկ տարում չի նախատեսել սարքավորումներ, Երևանի էլեկտրաապարատների գործարանը սարքավորումների զգալի մասն ստանում է չորրորդ եռամսյակում, որը կդժվարացնի մոնտաժային աշխատանքները։ Պատվիրատու մինիստրությունների, գերատեսչությունների ու ձեռնարկությունների ղեկավարները, վերջիվերջո, պետք է հասկանան, որ արտադրակարողությունները ժամանակին գործարկելու համար, շինարարների հետ հավասար պատասխանատվություն են կրում նաև իրենք։

Այժմ առանձնապես մտահոգիչ է շինարարական աշխատանքների որակը. այստեղ ևս գործերի վիճակն անբավարար է։ Զարենցավանում, Երևանի ավտոպահեստամասերի գործարանի արտադրամասում, Սևանի ապակե մեկուսիչների գործարանում տեղի ունեցած վթարներից հետևում է, որ որոշ շինկազմակերպություններ դեռ լրիվ չեն ըմբռնել իրենց պատասխանատվությունը շինարարության որակի համար։ Միանգամայն արդարացի են նորաբնակների բողոքները մշակման, սանտեխնիկական և էլեկտրամոնտաժման ցածրորակ աշխատանքների առթիվ։

Սակայն, պայքարելով շենքերի մշակման և նրանց տարբեր սիստեմների մոնտաժման բարձր որակի համար, մենք առավելապես պետք է մտահոգվենք հիմնական հարցով՝ այդ շենքերի ամրությամբ ու նրանց կարկասի սեյսմիկ կայունությամբ։ Շենքերի և կառույցների կոնստրուկցիոն սիստեմների մեջ այդ գլխավոր հարցում խախտումներն աններելի են և կարող են ողբերգական հետևանքներ թողնել։ Այս կապակցությամբ մինիստրությունների, գերատեսչությունների և կազմակերպությունների ղեկավարները պետք է լինեն անաչառ, չմոռանան, որ իրենք բարձր պատասխանատվություն են կրում ժողովրդի առաջ։

Արդի փուլում մեր երկրում մեծ թափ է ստացել շինարարական արտադրության մեջ աշխատանքի կազմակերպման նոր, պրոգրեսիվ ձևերի ներդրումը՝ Ն. Զլոբինի սիստեմով։ Հանրապետությունում այդ տեսակետից հատկապես լավ արդյունքների են հասել ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրության «Քաջարանշին», «Երարդշին», «Բարձրաբերձշին» տրեստները, գյուղական շինարարության մինիստրության № № 1, 2 և 7 տրեստները, ինչպես նաև «Հայհիդրոէներգոշինը», «Արփա—Սևանշինը» և այլն։ Այժմ արդյունաբերական շինարարության մինիստրության սիստեմում կազմակերպված են զլոբինյան 42 բրիգադներ, գյուղական շինարարության մինիստրության սիստեմում՝ 24։ Լավագույն ցուցանիշների է հասել «Քաջարանշին» տրեստի սոցիալիստական աշխատանքի հերոս Ռ. Մանասյանի ղեկավարած կոմպլեքսային բրիգադան, որն արդեն ավարտել է շինմոնտաժային աշխատանքների իր հնգամյակը։ Վեց ամսում այդ բրիգադան Ղափանում գերազանց կառուցեց հինգհարկանի բնակելի շենք՝ 3.077 քմ բնակելի տարածությամբ. շինարարության տևողությունը կրճատվեց 1.171 մարդ-օրով, տնտեսվեց 8 հազար ռուբլի։ Լավ արդյունքների են հասել նաև բրիգադավարներ Գ. Գևորգյանը («Քաջարանշին»), Դ. Մնացականյանը («Աբովյանշին»), Խ. Ալեքսանյանը («Գյուղշին» № 1 տրեստ), Ս. Բուլատովը («Հայհիդրոէներգոշին») և ուրիշներ։

1974 թ. օգոստոսին ՍՄԿԿ Կենտկոմը քննարկեց «Կուսակցության Օրյոլի մարզկոմի Օրյոլում բնակելի-քաղաքացիական օբյեկտների ռիթմիկ շահագործման հանձնելու կազմակերպման փորձը»։ Որոշման մեջ նշված է տեղի շինարարների հետաքրքրական նախաձեռնությունը. վերջին 2 տարիներին, առանց լրացուցիչ միջոցների և նյութական ռեսուրսների, զգալի կրճատել են բնակելի շենքերի և կուլտուր-կենցաղային օբյեկտների շինարարության ժամկետները, համաչափ, ըստ եռամսյակների ապահովել բնակելի շենքերի շահագործման հանձնումը, կրճատել անավարտ շինարարության ծավալը, բարձրացրել շինմոնտաժային աշխատանքների որակը, նվազեցրել ինքնարժեքը։

Օրյոլում իրականացվող միջոցառումների բնորոշ հատկանիշը նախագծային և շինարարական աշխատանքների պլանավորման նոր կարգն է, երբ դրանք պլանավորում են ոչ թե մեկ, այլ երկու տարվա համար։ Բացի այդ, կապիտալ ներդրումները կենտրոնացված են մեկ պատվիրատուի՝ քաղսովետի գործկոմի

մոտ, որը և պայմաններ ստեղծեց մեկ երրորդով կրճատելու միաժամանակ կառուցվող բնակելի շենքերի քանակը և վերջ դնելու կապիտալ ներդրումների փոշիացմանը։ Օրյոլի շինարարական փորձը պետք է բարեխղճությամբ ուսումնասիրել և ռացիոնալ օգտագործել մեր պայմաններում։

***

Վերջին հնգամյակների ընթացքում Հայաստանում կազմավորվել է շինարարների փորձված և աշխատասեր կոլեկտիվ, որը, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, ունակ է լուծելու արդյունաբերական, հիդրոտեխնիկական և էներգետիկ շինարարության խոշոր խնդիրներ, ինչպես նաև ժամանակակից քաղաքաշինության հարցերը։ Հանրապետությունում աշխատում է նախագծողների, ճարտարապետների և կոնստրուկտորների մի հիանալի կոլեկտիվ, որոնց գործերը լայն ճանաչում են գտել։

Կապիտալ շինարարության առաջադրանքներն անթերի կատարելու, կառուցման որակը բարձրացնելու, ինքնարժեքը իջեցնելու գործում մեծ է կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունը։ Նրանք կոչված են հետևողական կերպով զբաղվելու կառուցվող օբյեկտները ժամանակին գործարկելու հարցով, գլխավորելու սոցիալիստական մրցությունը, շինարարների հոծ բանակի ստեղծագործական նախաձեռնությունն ուղղելու իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարելու նպատակին։ Պետք է հաստատ համոզմունք ամրապնդել յուրաքանչյուր կառուցողի մոտ, որ նա անթերի կատարի իր պարտքը հայրենիքի հանդեպ, ժողովրդի հանդեպ։

Մենք թևակոխում ենք հնգամյակի համար վճռական նշանակություն ունեցող ժամանակաշրջան։ 1975 թվականը հանդիսանում է իններորդ հնգամյակի ավարտական տարին։ Շինարարների պատվի գործն է կյանքում լիովին կատարել ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով կանխագծված կապիտալ ներդրումների առաջադրանքը։ Մեծ է մեր հանրապետության կապիտալ ներդրումների ծրագիրը, որը կոմունիստական շինարարության հոյակապ պլանի մի մասն է կազմում։ Այդ պատվավոր խնդրի կատարումը մեր շինարարներից և նախագծային կազմակերպությունների աշխատողներից, պլանավորող, նյութա-տեխնիկական մատակարարման օրգաններից, շինարարական ինդուստրիայի և շինանյութերի արդյունաբերության աշխատողներից պահանջում է ուժերի և գիտելիքների լրիվ ներդրում, անձնական բարձր պատասխանատվություն, գործի նկատմամբ անսահման ուշադրություն և ամենօրյա հոգատարություն։

---

# ԳԻՏԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ՈՐԱԿՅԱԼ ԱՇԽԱՏՈՒԺԻ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

Հասարակական աշխատանքի արդյունավետության բարձրացման էական պայմաններից մեկը որակյալ աշխատուժի վերարտադրությունն է, ինչպես նաև որակապես միմյանցից տարբեր պրոֆեսիաների ու մասնագիտությունների գծով պատրաստվող կադրերի համամասնության ապահովումը։

Քանակական տեսակետից աշխատուժի վերարտադրությունը արտահայտվում է մի կողմից, արտադրության մեջ աշխատողների թվի փոփոխմամբ, մյուս կողմից, արտադրության պրոցեսում ծախսված աշխատուժի վերականգնումով։ Որակյալ աշխատուժի վերարտադրությունն արտահայտվում է աշխատողների և արտադրության մուտք գործողների գիտելիքների, հմտության, նրանց ունակությունների, կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումով և այլն։ Եթե աշխատողների թվի փոփոխությունը պայմանավորվում է բնակչության վերարտադրության տեմպերով, որի տատանումներն աշխատողների թվաքանակի վրա ներգործում են տարիներ հետո միայն, ապա աշխատուժի որակական փոփոխությունը պայմանավորված է հասարակության արտադրահարաբերությունների բնույթով, արտադրաուժերի զարգացման ու բնակչության կենսապայմանների մակարդակով, առողջապահության և բնակչության սպասարկման վիճակով։

Աշխատուժի, առավելապես որակյալ աշխատուժի վերարտադրությունը արտադրաուժերի զարգացման անընդհատ վերելքն ապահովող կարևոր պայմաններից մեկն է։ «Ամբողջ մարդկության գլխավոր արտադրաուժը,— գրել է Վ. Ի. Լենինը,— բանվորն է, աշխատավորը» (Երկեր, հ. 29, էջ 443)։

Աշխատուժի որակական աճը հանգեցնում է ավելի խոշոր տնտեսական արդյունքների, քան քանակականը։ Եթե աշխատողների թվաքանակի ավելացումն առաջ է բերում նաև սպառող բնակչության ավելացում, ապա աշխատուժի որակական աճը նման հետևանք չի ունենում։ Վերջինս, սակայն, ենթադրում է որակավորման համար պահանջվող լրացուցիչ ծախսեր, աշխատուժի ֆիզիկական զարգացման ու աճող հոգևոր պահանջների բավարարման համար լրացուցիչ միջոցներ, որոնք փոխհատուցվում են կարճ ժամանակամիջոցում։

Աշխատուժի քանակական և որակական վերարտադրությունը միմյանցից մեկուսացված պրոցեսներ չեն. քանակական փոփոխությունն ուղեկցվում է որակյալ աշխատուժի վերարտադրությամբ։ Աշխատունակ բնակչության քանակական ամեն մի համալրում, որպես կանոն, միաժամանակ նոր որակ է։ Սերունդների մշտական հաջորդափոխությունը կատարվում է ժամանակի ընթացքում, երբ հասարակական արտադրության յուրաքանչյուր նոր փուլին համապատասխան ստեղծվում են աշխատանքի նոր գործիքներ, որոնք աշխատուժի որակավորման նկատմամբ նոր պահանջներ են ներկայացնում։ Գիտա-տեխնի-

կական առաջընթացը պայմանավորում է արտադրության բոլոր՝ իրային և անձնական, գործոնների որակական թռիչք։ Եվ քանի որ հասարակական արտադրությունն անընդհատ զարգանում է, ապա յուրաքանչյուր տվյալ ժամանակաշրջանում այն ուղեկցվում է աշխատուժի որակավորման հանդեպ ցուցաբերվող նոր պահանջներով, նրա մի այնպիսի նոր որակի անհրաժեշտությամբ, որը համապատասխանի աշխատանքի ու արտադրության կազմակերպման, գիտության ու տեխնիկայի զարգացման տվյալ մակարդակի պահանջներին։ Ուստի, հասարակության աշխատանքային ռեսուրսները համալրող յուրաքանչյուր նոր սերունդ հասարակական արտադրություն է մտնում նրա պահանջները բավարարող գիտելիքների նոր մակարդակով։

Արտադրության տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, հասարակական արտադրության կառուցվածքի փոփոխությունը ուղեկցվում են արտադրության պրոցեսների բարդացմամբ, աշխատանքի գործիքների ու առարկաների միանգամայն նոր տեսակների ստեղծմամբ։ Գիտա-տեխնիկական առաջընթացը հանգեցնում է աշխատանքի բովանդակության, բնույթի, աշխատողների պրոֆեսիոնալ կազմի և կառուցվածքի, արտադրաուժերի համակարգում մարդու տեղի և դերի փոփոխությանը։ Հասարակական արտադրության կառուցվածքի փոփոխությունը ինքնըստինքյան պայմանավորում է նոր պրոֆեսիաների առաջացում և աշխատանքի պրոֆեսիոնալ բաժանման խորացում։ Այսպիսով, մարդու մասնագիտական պատրաստությանը ներկայացվող պահանջները արտադրաուժերի զարգացման համեմատ փոփոխվում են։

Սոցիալիզմը հասարակության յուրաքանչյուր անդամի ֆիզիկական ու մտավոր զարգացման համար նյութական ու հոգևոր նախադրյալներ է ստեղծում։ «Նոր հասարակության «իսկական հարստությունը»,— գրել է Մարքսը,— բոլոր անհատների զարգացած արտադրողական ուժն է» («Большевик», 1939, № 11—12, стр. 64 (Կ. Մարքսի չհրապարակված ձեռագրերից)։

Որակյալ աշխատուժի վերարտադրության, բաշխման և օգտագործման հարցերը նոր բովանդակություն են ստանում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման շրջանում, երբ առավել կարևորվում է արտադրաուժերի հիմնական տարրերի՝ աշխատանքի միջոցների և աշխատուժի որակավորման համապատասխանությունը։ Ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանները մշակելիս, պետք է ելնել այն սկզբունքից, որ ավելի ու ավելի պարզորոշ դառնա արտադրաուժերի այդ հիմնական տարրերի միջև ոչ միայն որակական, այլև քանակական համապատասխանությունը։ Զարգացման յուրաքանչյուր տվյալ ժամանակաշրջանում պետք է աշխատուժի որակական փոփոխությունը չսահմանազատել նրա քանակական աճից։ Դրանով է պայմանավորվում մի կողմից, լրացուցիչ աշխատողների, մյուս կողմից, դրանց համար անհրաժեշտ արտադրամիջոցների (իրենց անհրաժեշտ բաղադրամասերով) պահանջը։

Գիտա-տեխնիկական առաջընթացի շնորհիվ աշխատանքի փոփոխման օրենքի գործողության շրջանակների ընդլայնման, հին մասնագիտությունների անհետացման ու նորերի առաջացման պայմաններում արտադրության մեջ աշխատող որակյալ բանվորների վերաորակավորումն ու նոր մասնագիտության ձեռք բերումը դառնում են օբյեկտիվ անհրաժեշտություն։ Եթե հասարակական արտադրության զարգացման նախորդ փուլերին այս կամ այն չափով բնորոշ էր գրեթե իր ողջ կյանքի ընթացքում աշխատուժի ամրացումն աշխատանքի որևէ տեսակի, ապա արդի գիտա-տեխնիկական առաջընթացին հատուկ է որակապես միմյանցից տարբեր աշխատանքի մի տեսակից մյուսին անցնելը, որը ուղեկցվում է ավելի պարզ պրոֆեսիաները բարդով, պակաս որակյալը ավելի որակյալով փոխարինելու ինտենսիվ պրոցեսի հետ։ Տեխնիկական առաջընթացը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը վերազինելով նորագույն տեխնիկայով, հեղափոխիչ ներգործություն է ունենում աշխատանքի բնույթի ու բովանդակության վրա, դառնում նյութական հիմք արտադրության անձնական գործոնի կատարելագործման համար։

Այսպիսով, գիտա-տեխնիկական հեղափոխության շնորհիվ երևան են գա-



լիս սկզբունքորեն նոր պրոֆեսիաներ։ Դրանց կրողների ֆունկցիան դառնում է հաշվիչ մեքենաներ ու ավտոմատ սարքեր, ավտոմատացված հոսքային գծեր, արտադրամասեր ու ամբողջական գործարաններ ստեղծելն ու սպասարկելը։ Երևան են գալիս պրոֆեսիաներ, որոնք կապված են տիեզերքը նվաճելու, ատոմը ճեղքելու, միջմոլորակային հրթիռային տեխնիկայի, հասարակական արտադրության այլ բնագավառների հետ։ Եվ, չնայած այդ ամենին, նախկինի նման, հասարակական աշխատանքի և նրա պրոֆեսիոնալ բաժանման ընթացքը կախված է մարդկային գործունեության նոր ոլորտների ստեղծման հետագա ընթացքից։ Ընդ որում, նոր մասնագիտությունների ստեղծման և հների վերացման դիալեկտիկական միասնությունը ուղեկցվում է բազմաթիվ պրոֆեսիաների ու մասնագիտությունների մերձեցման ու ինտեգրացման, որակապես նոր պրոֆեսիաների երևան գալու հետ։ Մարդկանց գիտելիքների և նրանց մասնագիտացման խորացումը, այնուհանդերձ, միշտ էլ կուղեկցվեն աշխատանքի հասարակական և պրոֆեսիոնալ նոր բաժանման հետ։ Ամեն դեպքում, առաջացող նոր պրոֆեսիաները ոչ այլ ինչ են, եթե ոչ մարդկային գործունեության տարատեսակներ, որոնք միմյանցից տարբերվում են իրենց որակական պահանջներով։ Աշխատանքի նոր հասարակական բաժանման ազդեցության ներքո նոր բնույթ են ստանում նաև աշխատուժի որակական ու քանակական մերձեցման ընթացքը, աշխատանքային ռեսուրսների տերիտորիալ բաշխումը։ Աշխատուժի շարժունակությունը բարձրանում է ոչ միայն տերիտորիալ, այլև պրոֆեսիոնալ որակական մակարդակի աճի և կառուցվածքի տեսանկյունով։ Հասկանալի է, որ վերարտադրության բոլոր փուլերում աշխատողի դերի փոփոխության հարցում խիստ մեծ է գիտության և տեխնիկայի նշանակությունը։

Ավտոմատացումը, վերացնելով ըստ օպերացիաների աշխատանքի մասնագիտական բաժանումը և դնելով պրոֆեսիաների ու մասնագիտությունների ինտեգրացման հիմքը, պահանջում է զուգակցել պրոֆեսիոնալ բարձր վարպետությամբ օժտված մտավոր ստեղծագործական և դյուրին ֆիզիկական աշխատանքները։

Հասարակական արտադրության տեխնիկական բազայի աստիճանական վերափոխումը և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական վերազինումը կհանգեցնեն աշխատողների ընդհանուր թվում ինժեներա-տեխնիկական և բարձր որակավորում ունեցող այլ մասնագետների, բանվորների թվում՝ սարքավորումների ֆունկցիոնավորումը ապահովող մասնագետների ավելացմանը։ Ավտոմատացումը արտամղում է օժանդակ բանվորների մի ամբողջ զանգված, այն աստիճանաբար կրճատում է նաև մեքենայացված աշխատանքներում ընդգրկվածների թիվը, որոնք փոխարինվում են պրոֆեսիոնալ բարձր որակավորում ունեցող բանվորներով։ Մարդկային գործունեությունը աստիճանաբար վերածվում է ինժեներա-տեխնիկական աշխատանքի տարատեսակի։

Արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը հանգեցնում են մտավոր աշխատանքի տարրերի ավելացմանը։ Դա տեղի է ունենում ոչ միայն այն պատճառով, որ ուղեղն իր վրա է վերցնում նյարդային ու մկանային էներգիայի որոշ ֆունկցիաներ, այլև հիմնականում այն բանի հետևանքով, որ ինչպես մկանային ու նյարդային, այնպես էլ ուղեղի գործունեության որոշ ֆունկցիաներ իրենց վրա են վերցնում ավտոմատ սարքերն ու հարմարանքները։ Այսպիսով, ավտոմատացված արտադրությունն ինքնըստինքյան պահանջում է լայն պրոֆիլի մասնագետներ։ Տեղի է ունենում ավելի նեղ մասնագիտությունների միաձուլում։ Ահա թե ինչու առաջին պլան է մղվում հանրակրթական բազայի վրա լայն պրոֆիլի պրոֆեսիաների մասնագետների պատրաստումը։ Ընդհանուր և պրոֆեսիոնալ բարձր գիտելիքները դառնում են հանրային արտադրություն մուտք գործելու պարտադիր պայման։

Գիտա-տեխնիկական առաջընթացն անխուսափելիորեն կհանգեցնի աշխատանքային ռեսուրսների կազմում սովորողների տեսակարար կշռի ավելացմանը, և դրանով իսկ, աշխատանքային տարիքի բնակչության կազմում՝ աշխա-

տողների տեսակարար կշռի նվազեցմանը։ Այդ օրինաչափությունը ՀՍՍՀ-ում ավելի ցայտուն ձևով կդրսևորվի առաջիկա տասնամյակում։ Ընդ որում, դա պայմանավորված է ոչ միայն գիտա-տեխնիկական առաջընթացի պահանջներով, այլև աշխատանքային տարիքի բնակչության կազմում 16—24 տարեկանների տեսակարար կշռի և ընդհանրապես նրանց բացարձակ թվի խիստ ավելացմամբ։ Հաշվարկները ցույց են տալիս, որ 1976—80 թթ. աշխատանքային տարիք մուտք կգործեն շուրջ 365 հազար պատանի ու աղջիկ։ Ընդհանուր առմամբ, առաջիկա 25 տարում այդ թիվը կհասնի մեկ մլն 715 հազարի։

Անտարակույս, զարգացած սոցիալիզմի որոշակի շրջանում պատանիներն ու աղջիկները հանրային արտադրություն կմտնեն միայն նախապես մասնագիտություն և պրոֆեսիա ստանալուց հետո։ Առանց վարանելու կարելի է ասել, որ ինչքան մեծանում է հեռանկարային կանխատեսման ընդգրկման ժամանակաշրջանը, այնքան աշխատուժի վերարտադրության համար ուսումնական ցանցի ընդլայնման մասշտաբներն ավելի են մոտենում համապատասխան տարիքի պատանիների ու աղջիկների թվի մեծությանը և պայմանավորվում դրանով։

Ճիշտ է, ապագայում Հայկական ՍՍՀ-ում աշխատանքային տարիք թևակոխող բնակչությունը իր թվով կապահովի ժողովրդական տնտեսության որակյալ աշխատուժի պահանջները, բայց առանձին տնտեսական շրջաններում դա կարող է և տեղի չունենալ։ Այդ շրջանները, բնականաբար, որակյալ աշխատուժի նկատմամբ ժողովրդական տնտեսության իրենց պահանջները կբավարարեն մյուս շրջանների հաշվին, որոնցում աշխատանքային տարիք թևակոխող երիտասարդությունն իր աճի բացարձակ չափերով գերազանցում է ժողովրդական տնտեսության պահանջները։

Որակյալ աշխատուժի սոցիալիստական ընդլայնված վերարտադրությանը հատուկ է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար բարձրորակ մասնագետների պատրաստումը։ Դա առանձնապես ցայտուն դրսևորվել է Հայաստանում։ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ բարձրորակ մասնագետների մեծ պահանջը հանգեցրել է ո՛չ միայն աշխատանքային տարիքում սովորողների քանակի բացարձակ աճին, այլև աշխատանքային ռեսուրսների ընդհանուր թվի մեջ նրանց տեսակարար կշռի ավելացմանը։ Օրինակ, ՀՍՍՀ-ում 1961—1971 թթ. աշխատանքային ռեսուրսների աճի միջին տարեկան տեմպերը կազմել են 3,5 տոկոս, մինչդեռ աշխատունակ տարիքում արտադրությունից կտրված սովորողների թվի միջին տարեկան աճը կազմել է 10,9 տոկոս։

Հասարակական արտադրության մեջ խիստ ավելացել է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը։ Դա ժողովրդական տնտեսության մեջ գիտա-տեխնիկական առաջընթացի նվաճումների կիրառումն արագացնելու կարևորագույն պայմաններից մեկն է։ 1973 թ. վերջերին ՀՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների ընդհանուր թիվը հասավ 188 հազարի։ Դա նշանակում է, որ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված յուրաքանչյուր 1.000 բանվոր-ծառայողի ընկնում է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 196 մարդ։ Ներկայումս հանրապետության բուհերում սովորում են մոտ 53 հազար, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ ավելի քան 51 հազար պատանիներ ու աղջիկներ։ 1973 թ. դրանք համապատասխանաբար տվել են 10,3 և 12,6 հազար շրջանավարտ։ Ակնհայտ է, որ ժամանակի ընթացքում պետք է հասնել բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թվի օպտիմալ հարաբերակցության։ Ներկայումս նման համամասնություն չի նկատվում։ 1965 թ. ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բարձրագույն կրթություն ունեցող 100 մասնագետի հաշվով աշխատում էին միջնակարգ մասնագիտական կրթությամբ շուրջ 85 մարդ։ Այդ անհամամասնությունը հետագայում ոչ միայն չշտկվեց, այլև խորացավ. 1973 թ. բարձրագույն կրթությամբ 100 մարդու հաշվով աշխատում էր արդեն միջնակարգ կրթությամբ 78 մասնագետ։ Այդ իսկ



պատճառով էլ հասարակական արտադրության բազմաթիվ բնագավառներում ավելի շատ զգացվում է միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների կարիք. այդ տեղերը զբաղեցնում են բարձրագույն կրթությամբ անձինք։ Ըստ որում, 1970 թ. մարդահամարի տվյալներով ժողովրդական տնտեսության մեջ զբաղված յուրաքանչյուր 1.000 մարդու հաշվով բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն ունեին 122-ը, իսկ միջնակարգ մասնագիտական՝ 81-ը։

Տնտեսագետները գտնում են, որ ժամանակակից պայմաններում միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը մի քանի անգամ պետք է գերազանցի բարձրագույն կրթություն ունեցողների թվին։ Հետևապես, մեր կարծիքով, այսուհետև Հայկական ՍՍՀ բուհերում ընդունելության մասշտաբների ընդլայնումը պետք է կրի ավելի չափավոր բնույթ, իսկ միջնակարգ մասնագիտական հաստատություններում՝ ընդհակառակը։

Գիտության և տեխնիկայի խոշորագույն տեղաշարժերը, վերափոխելով արտադրության տեխնիկական բազան, նոր պահանջներ են առաջադրում նաև բանվորական որակյալ կադրերի պատրաստմանը։ Դա բխում է արտադրաուժերի իրային տարրերին կենդանի աշխատուժի՝ անձնական տարրերի լրիվ համապատասխանության տնտեսական օրենքի օբյեկտիվ պահանջներից և ապահովվում է այդ տարրերի ներդաշնակ զարգացման շնորհիվ։ Միջոցները բաշխելիս, պետք է ելնել այն սկզբունքից, որ որոշակի համապատասխանություն ստեղծվի հիմնական ֆոնդերի արժեքի և բանվորական կադրերի պատրաստման համար նախատեսվող միջոցների աճի տեմպերի, այսինքն՝ արտադրության տեխնիկական բազայի վերափոխման և բանվորների պրոֆեսիոնալ որակական աճի մակարդակների միջև։ Չնայած վերջին 10—15 տարիների ընթացքում պրոֆտեխնիկական կրթության սիստեմի զգալի տեղաշարժերին (1960 թ. պրոֆտեխուսումնարանները տվել են ընդամենը 1,9 հազար, իսկ 1970 թ.՝ 20,1 հազար շրջանավարտ), բանվորական կադրերը հիմնականում պատրաստվում են անմիջապես արտադրությունում։ 1965—1973 թթ. պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն ստացողները կազմել են անմիջականորեն արտադրության մեջ (առանց կոլտնտեսությունների) նոր պրոֆեսիա և մասնագիտություն ձեռք բերածների 33—34 տոկոսը։ 1965—1973 թթ. ՀՍՍՀ պրոֆտեխնիկական կրթության ուսումնարաններում և դպրոցներում պատրաստվել է 117,3 հազար բանվոր, իսկ արտադրությունում ուսուցման միջոցով նոր պրոֆեսիաներ և մասնագիտություններ ձեռք բերած բանվորների թիվը կազմել է 351 հազար մարդ։ Այդ ընթացքում շուրջ կես միլիոն բանվոր անցել է որակավորման բարձրացման դասընթացներ։

Նկատենք նաև, որ առանց պրոֆեսիոնալ պատրաստության աշխատանքի ընդունվող ոչ բոլոր բանվորներն են արտադրությունում անմիջապես ընդգրկվում անհատական, դասընթացային կամ պրոֆեսիոնալ ուսուցման որևէ ձևում։ Մյուս կողմից, անմիջապես արտադրությունում պրոֆեսիա ու մասնագիտություն ձեռք բերողները միայն նոր ընդունվող բանվորները չեն։ Ուստի, աշխատանքի անցնող բանվորների մեծ մասը արտադրություն է մտնում՝ չունենալով հիմնավոր նախնական պրոֆեսիոնալ պատրաստություն։ Մինչդեռ ներկայումս, իսկ հեռանկարում առավել ևս, այդ կարգով բանվորական կադրերի պատրաստումը չի կարող բավարարել գիտա-տեխնիկական առաջընթացի պահանջները։ Պետք է նկատել նաև, որ պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության սիստեմում ոչ բավարար չափով է իրականացվում նոր հեռանկարային պրոֆեսիաներով մասնագետների պատրաստման գործը։

Տնտեսագիտական ուսումնասիրությունները վկայում են, որ բանվորի աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի, արտադրակարողությունների խնամքի, հումքի և աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման և աշխատանքի համաչափ կազմակերպման առումով խիստ տարբերություն կա ոչ միայն անմիջապես արտադրությունում պատրաստված և պրոֆտեխնիկական կրթություն ունեցող բանվորների, այլև կրթական տարբեր ցենզ ունեցող բանվորների միջև։ Օրինակ, մեկ տարվա ստաժ և 4—5-րդ դասարանի կրթություն ունեցողների մոտ, միջին հաշվով, մեկ տարվա ընթացքում որակա-





վորումը բարձրանում է տարիֆային ցանցի 0,33 կարգի, 7—9-րդ դասարանի կրթություն ունեցողների մոտ՝ 0,43, լրիվ միջնակարգ կրթություն ունեցողների մոտ՝ 0,51 կարգի չափով (տե՛ս Е. В. Маслова. Зависимость квалификации рабочих от общей образовательной подготовки и трудового стажа, см. в сб. «Актуальные вопросы экономики народного образования», М., 1965, стр. 98)։ Ըստ տվյալների, յոթնամյա կրթություն ունեցող բանվորները մեկ կարգով բարձրանում են միջին հաշվով 3, իսկ լրիվ միջնակարգ կրթություն ունեցողները՝ 2 տարին մեկ։

Գաղտնիք չէ, որ արտադրությունում կազմակերպվող դասընթացները կարճատև են, չեն տալիս ոչ միայն տեսական, այլև գիտա-տեխնիկական գիտելիքներ, հաճախ չեն համապատասխանում ոչ միայն արտադրաուժերի զարգացման ընդհանուր մակարդակին, այլև տվյալ ձեռնարկության տեխնիկական հագեցվածությանը։ Արտադրական ձեռնարկությունները, մեծ մասամբ, արտահայտում են գիտա-տեխնիկական առաջընթացի անցյալ մակարդակը, իսկ նրանցում որակավորվող բանվորները չեն կարող ավելին ստանալ։ Անմիջականորեն արտադրությունում պատրաստված բանվորների մեծ մասը հիմնականում անցնում է անհատական ուսուցում, իսկ նրանց ուսուցող հրահանգիչները աշխատում են գործավարձով և այդ նպատակին քիչ ժամանակ են տրամադրում։ Նրանցից շատերը չունեն ուսուցանելու լավ մեթոդ, մասնագիտության հաղորդելու փորձ։ Անհատական ուսուցման անարդյունավետությունն արտահայտվում է նաև նրանում, որ բանվորները ձեռք են բերում չափազանց նեղ պրոֆիլի մասնագիտություն, ցածր է նրանց որակավորման մակարդակը։

Ուսումնա-մեթոդական ղեկավարությունը ձեռնարկությունում կատարյալ կամ նույնիսկ բավարար լինել չի կարող անգամ խմբային ուսուցման պայմաններում։ Ուսումնա-մեթոդական գործունեությունը այս կամ այն ձեռնարկությունում իրականացնում են մեկ-երկու աշխատող, որոնք հաճախ չունեն համապատասխան մեթոդական փորձ և գիտելիքներ։ Ձեռնարկություններում չկա բանվորների պատրաստման և որակի բարձրացման մի միասնական համակարգ։ Այս ոչ արդյունավետ պրակտիկան մեծապես կաշկանդում է մասսայական պրոֆեսիաների կադրերի պատրաստումը։

Առաջիկա 5—10 տարիներին բանվորական կադրերի որոշ մասը, նախկինի նման, կպատրաստվի անմիջականորեն արտադրությունում։ Դա, իհարկե, բացատրվում է ոչ միայն նրանով, որ պրոֆտեխնիկական համակարգի ուսումնա-արտադրական բազան առայժմ չի կարող լիովին բավարարել այդ պահանջը, այլև հասարակական արտադրության տեխնիկական վերազինման տեմպերով, երբ միանգամից հնարավոր չէ հաղթահարել պրոֆեսիաների ու մասնագիտությունների այն մեծ բազմազանությունը, որ ներկայումս գոյություն ունի։ Մինչդեռ այդ բազմազան պրոֆեսիաների ու մասնագիտությունների մի զգալի մասը պահանջում է կարճատև ուսուցում, որը պրոֆտեխուսումնարաններում տնտեսապես արդյունավետ չէ։

Հասկանալի է, որ անմիջականորեն արտադրությունում որակավորում և պրոֆեսիա ձեռք բերելու ձևերն ու մեթոդները պետք է կատարելագործվեն և համապատասխանեցվեն օրվա պահանջներին։ Այս առումով լայն հնարավորություններ են ընձեռում, օրինակ, արտադրական միավորումները, որոնք ի վիճակի են ավելացնել ուսումնառության տևողությունը և պատրաստել իրենց անհրաժեշտ լայն պրոֆիլի մասնագետներ։ Նրանք կարող են բարելավել ուսումնա-արտադրական բազան, բարձրացնել դասավանդման մակարդակը, մեթոդական ղեկավարությունը և այլն։

Ժամանակակից, առավել ևս ապագա արտադրությանը սպասարկելու համար բանվորական կադրերի պատրաստման հիմնական ուղին ոչ այնքան պրակտիկ փորձի միջոցով ունակությունների զարգացումն է, որքան պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգում գիտա-տեխնիկական գիտելիքներով նրանց զինելը։ Եթե ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում բարձրորակ կադրերի հիմնական պահանջը պետք է բավարարեն բուհերն ու տեխնիկումները, ապա բանվորական անձնակազմի հիմնական պահանջը բավարա-



րելու վճռական դերը աստիճանաբար կանցնի պրոֆեսիոնալ տեխնիկական կրթության ցանցին։ Բանվորական պրոֆեսիաների գծով կադրերի պատրաստման չափերը կանխորոշելիս պետք է ելնել այն բանից, որ ավտոմատացման շրջանակների ընդլայնման շնորհիվ օպերացիոն-տեխնոլոգիական պրոցեսներից մարդու անմիջական մասնակցության արտամղման հետևանքով, լայն պրոֆիլի որակապես նոր պրոֆեսիաների բանվորական կադրերի պատրաստումը խիստ անհրաժեշտություն է դառնում։

Գիտության և տեխնիկայի բնագավառի խոշոր տեղաշարժերը, վերափոխելով արտադրության տեխնիկական բազան, մեծ վերափոխումներ են ենթադրում նաև կրթության, ամենից առաջ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմում։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1969 թ. ապրիլին որոշում ընդունեցին պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմը բարելավելու մասին։ Այդ որոշման համաձայն, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունները պետք է աստիճանաբար վերակազմվեն ուսուցման 3—4-ամյա տևողությամբ պրոֆտեխնիկական ուսումնարանների, որոնք, բացի մասնագիտական ուսուցումից, երիտասարդությանը կտան նաև միջնակարգ կրթություն։ Արդեն 1972—73 ուստարում մեր հանրապետությունում այդ նոր ցանցում սովորում էր 4,8 հազար մարդ։ Պրոֆտեխնիկական կրթության ուսումնարաններում և ֆաբրիկա-գործարանային ուսումնարանների ցանցում սովորողների թիվը հասնում էր մոտ 22 հազարի։

Այս ամենով հանդերձ, հետագայում ավելի ու ավելի մեծ նշանակություն կստանա միջնակարգ ուսումնական հաստատությունների շրջանակներում պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությունը։ Դրա անհրաժեշտությունն առավելապես հասունանում է հանրային արտադրություն մուտք գործող երիտասարդության պրոֆեսիոնալ կողմնորոշման որոշակի պրոբլեմներ լուծելու և պլանավորված կարգով ժողովրդական տնտեսությանը անհրաժեշտ կադրեր պատրաստելու առումով։ Բնորոշ է հետևյալ փաստը. ՀՍՍՀ արդյունաբերության մեջ հոսունության տոկոսը մեծ է մինչև 20 տարեկան այն բանվորների մոտ, որոնք չունեն տարակարգ և պրոֆեսիա։ ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ բանվորների հոսունության հիմնական պատճառներից մեկը աշխատանքային հեռանկարի բացակայությունն է։ Մինչդեռ, աշխատանքից ինքնակամ ազատվողների մեջ շատ քիչ են մասնագիտական կրթություն ունեցողները։

ՀՍՍՀ-ում պրոֆտեխնիկական կրթության զարգացման խնդիրն առանձնահատուկ նշանակություն կստանա առաջիկա երկու հնգամյակներում։ Հիմնականում այդ տարիներին կստեղծվի նոր տիպի պրոֆտեխնիկական ուսումնական համակարգի նյութա-տեխնիկական բազան և, բացի այդ, զգալիորեն կավելանա 14—19 տարեկանների բացարձակ թիվը։ (1970 թ. պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնական հաստատությունների շրջանավարտների թիվը ՀՍՍՀ-ում 15—19 տարեկան յուրաքանչյուր 1.000 բնակչի հաշվով կազմել է 60 մարդ, ՌՍՖՍՀ-ի՝ 80 և Լատվիական ՍՍՀ-ի՝ 86 մարդու դիմաց)։

Հավանաբար, ճիշտ կլինի պրոֆտեխնիկական ուսումնական ցանցի ընդլայնումը պլանավորել այն հաշվով, որ նոր աշխատանքի անցնող բանվորների ընդհանուր թվի մեջ դրանց շրջանավարտների տեսակարար կշիռն ավելանա 2,5—3 տոկոսի չափով։ Դա կնշանակի 5 տարի հետո, այսինքն՝ 10-րդ հնգամյակի վերջում, աշխատանքի նոր անցնողների 45—50, 11-րդ հնգամյակի վերջում՝ 60—65, 12-րդ հնգամյակի վերջում՝ 70—75 տոկոսը ապահովել պրոֆտեխնիկական կրթություն ունեցողներով։ Ընդ որում, չպետք է ելնել այն կատեգորիկ դատողությունից, թե անմիջականորեն արտադրությունում այլևս բանվորներ չպետք է պատրաստվեն։ Որոշակի պրոֆեսիաների, մասնավորապես քիչ ուսումնառություն կամ մեծ արտադրական փորձ պահանջող պրոֆեսիաների բանվորներ միշտ էլ կպատրաստվեն արտադրության մեջ։ Պետք է նկատի առնել նաև աշխատանքի փոփոխման օրենքի գործողության շրջանակների ընդլայնումը. Նոր մասնագիտություն ու պրոֆեսիա ձեռք բերելը, վերա-

որակավորումը, բազմահաստոցային սպասարկման անցնելը հիմնականում կիրականացվեն արտադրության մեջ։

Կյանքն ինքն է թելադրում, թե հեռանկարում հատկապես ինչ պրոֆիլի ու պրոֆեսիաների բանվորական կադրեր պետք է պատրաստվեն։ Ընդ որում, պետք է նկատի ունենալ ոչ միայն ընդհանուր տենդենցները, այլև պահանջվող կադրերի թիվը։ Բայց այդ հարցերը կարող են ավելի կամ պակաս չափով հիմնավոր պատասխան ստանալ միայն մանրազնին ուսումնասիրությունների հիման վրա։

Առանձին պրոֆեսիաների ու մասնագիտությունների գծով ընթացիկ ու հեռանկարային հաշվեկշիռները կարող են կազմվել ձեռնարկության, ճյուղի, շրջանի, քաղաքի, հանրապետության մասշտաբով։ Սակայն ձեռնարկությունների համապատասխան վիճակագրական հաշվետվությունները, որ կարող էին այդպիսի հաշվեկշիռներ կազմելու միջոց ծառայել, առայժմ նման հնարավորություն չեն ընձեռում։ Նրանցում չեն շոշափվում որակյալ աշխատուժի լրացուցիչ պահանջի, առանձին պրոֆեսիաների բանվորների հարաբերական ավելցուկի ու պրոֆեսիոնալ պատրաստման ենթակա աշխատուժի ճիշտ չափը և ուղղությունը որոշելու հարցերը։ Մինչդեռ ժողովրդական տնտեսությունը համապատասխան պրոֆեսիաների բանվորական որակյալ կադրերով պլանաչափորեն ապահովելը իր արտացոլումը պետք է գտնի հեռանկարային պլանավորման մեջ՝ որպես վերջինիս անհրաժեշտ տարր։ Մի բան, որ չի արվում, և ակներև են դրա բացասական հետևանքները։

Վերցնենք որակյալ կադրերով նորակառույց ձեռնարկությունների ապահովման օրինակը։ Այդ ձեռնարկությունները հագեցվում են նոր տեխնիկայով, ուստի և պահանջվում է բանվորների պրոֆեսիոնալ-որակական նոր կազմ։ Մինչդեռ, նման ձեռնարկություններ կառուցելիս, որպես կանոն, նախագծերում չեն նշվում որոշակի պրոֆեսիաների պահանջը, գործարկվող օբյեկտները որակյալ աշխատուժով ապահովելու անհրաժեշտ միջոցներն ու աղբյուրները։ Դա չէ՞ արդյոք այն պատճառներից մեկը, որ հանրային արտադրության առանձին ճյուղերում որոշակի պրոֆեսիաների բանվորների խիստ կարիք է զգացվում՝ այլ պրոֆեսիաների բանվորների ավելցուկի պայմաններում։

Այսպիսով, համապատասխան մասնագիտությունների համար բանվորական կադրերի պատրաստումը պետք է բխի ժողովրդական տնտեսության կողմից առաջադրվող պահանջներից։ Տնտեսագիտական ուսումնասիրությունները պետք է ծառայեն հենց այդ կապի բացահայտմանը։ Այս տեսակետից, անհրաժեշտ է ընդլայնել երիտասարդության պրոֆեսիոնալ կողմնորոշման ասպարեզում կատարվող հետազոտությունների շրջանակները։ Հասկանալի է, որ այդ պրոբլեմները պետք է սերտորեն շաղկապվեն ժողովրդական տնտեսության զարգացման, նրա ճյուղային կառուցվածքի փոփոխությունների, նոր մասնագիտությունների առաջացման ու հների անհետացման հարցի ուսումնասիրության հետ։ Այդ կերպ միայն հնարավոր է երիտասարդության հակումներին, նրանց ցանկություններին տալ այնպիսի ուղղություն և ընթացք, որոնք կբխեն ժողովրդական տնտեսության շահերից։ Խնդիրը տվյալ դեպքում ոչ միայն երիտասարդության մասնագիտական կողմնորոշման վրա հասարակության կողմից ունեցած ակտիվ ազդեցության, այլև դրան նպատակասլաց և հիմնավոր ուղղություն տալու մասին է։

Արդի գիտա-տեխնիկական առաջընթացի պայմաններում, երբ որոշիչ են դառնում հասարակական արտադրության զարգացման ինտենսիվ գործոնները, որակյալ աշխատուժի վերարտադրությունը ձեռք է բերում առանձնահատուկ կարևորություն։ Էապես դրանով է պայմանավորվում հասարակական արտադրության զարգացման ընթացքը, որն իր արտահայտությունն է գտնում աշխատանքի արտադրողականության բարձրացման և ազգային եկամտի արտադրության ավելացման մեջ։ Աշխատուժի վերարտադրության պրոբլեմի գիտական լուծումը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման կարևորագույն գործոններից մեկն է։

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀՈԳԵՎՈՐ ԱՐԺԵՔՆԵՐԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

Բանվոր դասակարգը սոցիալիստական հասարակարգի առաջատար ուժն է։ Այն որոշիչ ազդեցություն է ունենում ոչ միայն հասարակության նյութական հիմքերի և սոցիալական հարաբերությունների, այլև նրա ամբողջ հոգևոր կյանքի ու արժեքների զարգացման վրա, կոմունիստական անհատի ձևավորման պրոցեսի վրա։

Բանվոր դասակարգը հենց այն պատճառով է ունակ գործուն ազդեցություն ունենալու հասարակական նոր հարաբերությունների զարգացման և աշխատավորների ամենալայն զանգվածներին կոմունիստական գաղափարայնության ու բարոյականության ոգով դաստիարակելու վրա, որ նա մարքս-լենինյան գաղափարախոսության առաջավոր կրողն է ու ակտիվ գործադրողը, կոմունիզմի գիտակից մարտիկը։

Ստորև մենք կանգ կառնենք մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսության, բանվոր դասակարգի պայքարի պրակտիկայի և սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքում նրա կատարած առաջատար դերի միջև եղած դիալեկտիկական կապի մի քանի ասպեկտների վրա։

## 1.

Խոր իմաստ կա այն բանում, որ մարքս-լենինյան գիտությունը, որը մարդկության առջև բացեց շահագործումից, պատերազմներից ու սոցիալական այլ ցնցումներից ազատագրվելու, համաշխարհային քաղաքակրթությունն ու կուլտուրան հարստացնելու ուղին, սերտորեն կապված է բանվոր դասակարգի հետ։ Բացահայտելով այդ կապը, Վ. Ի. Լենինը գրել է, որ մարքսիզմը «...միացնում է խիստ ու բարձրագույն գիտականությունը (հանդիսանալով հասարակական գիտության վերջին խոսքը) հեղափոխության հետ և միացնում է ո՛չ թե պատահաբար, ո՛չ թե այն պատճառով միայն, որ դոկտրինայի հիմնադիրն անձնապես իր մեջ միացնում էր գիտնականի ու հեղափոխականի հատկությունները, այլ միացնում է բուն իսկ տեսության մեջ ներքնապես ու անխզելիորեն։ Իսկապես, այստեղ իբրև տեսության խնդիր, գիտության նպատակ ուղղակի դրվում է աջակցել ճնշվածների դասակարգին՝ իրոք տեղի ունեցող նրա տնտեսական պայքարում» (Երկեր, հ. 1, էջ 417)։

Ղեկավարվելով այդ ուսմունքով, կենսագործելով կուսակցության քաղաքականությունը, բանվոր դասակարգը գլխավորում է հասարակության արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումների պրոցեսը և դրանով դնում է սոցիալիստական հասարակական գիտակցության, մասսաների նոր հոգևոր աշխարհի ու կուլտուրայի ձևավորման ամուր հիմքը։

Սոցիալիզմի հաղթանակի հետ միասին բանվոր դասակարգի գաղափարախոսությունը դառնում է համաժողովրդական, այսինքն՝ այն գիտակցորեն բա-

ժանում են հասարակության բոլոր դասակարգերն ու սոցիալական մյուս խմբերը։ Ընդ որում, ինքը՝ բանվոր դասակարգը, կյանքի ու աշխատանքի, գիտելիքների ու կուլտուրայի նկատմամբ ցույց է տալիս սոցիալիստական վերաբերմունքի առաջավոր օրինակ, քաղաքական հասունության և գաղափարայնության օրինակ։ Հենց նրա շրջանում, աշխատանքային կոլեկտիվներում են ծնվում այն փառապանծ նախաձեռնություններից շատերը, որոնք, լայնորեն տարածվելով, ամրապնդում են կոմունիստական գաղափարայնության և բարոյականության դիրքերը աշխատավորական զանգվածների մեջ։

Բանվոր դասակարգը ո՛չ միայն չի ձգտում հավերժացնել իր շահերը, ինչպես այդ անում էին անցյալում տիրապետող դասակարգերը, այլև իր պայքարի գերագույն իմաստը համարում է այն քաղաքականության իրականացումը, որը կոմունիզմի ճանապարհին հանգեցնում է մարդկանց միջև եղած բոլոր ու ամեն տեսակի սոցիալ-դասակարգային սահմանների աստիճանական վերացմանը։ Դա պատմության մեջ առաջին և միակ դասակարգն է, որը իր շահերից ելնելով, ստեղծում է մի հասարակարգ— սոցիալիզմ՝ աշխատավոր դասակարգերի ու սոցիալական այլ խմբերի արմատական շահերի կայուն միասնությամբ։

Այս ամենը վկայում է, որ բանվոր դասակարգի ու նրա կուսակցության մարքս-լենինյան գաղափարախոսության դասակարգայնությունը չի հակասում այդ գաղափարախոսության հումանիստական էությանն ու համամարդկային նշանակությանը։ Ճիշտ հակառակը։ Դասակարգայնությունը որոշում է սոցիալական այն պրակտիկայի ուղղությունն ու բովանդակությունը, որը ամբողջ հասարակությանը առաջ է տանում կոմունիստական վերընթացի աստիճաններով։ Գիտական աշխարհայացքն ու կոմունիստական բարոյականությունը, որոնք հաստատվում են բանվոր դասակարգի գաղափարախոսությամբ, նրա սոցիալական պրակտիկայով, մասսաների ու անհատի բանականությունն ու զգացմունքներն ազատագրում են կրոնական, իդեալիստական կապանքներից, մարդու մեջ արթնացնում ստեղծագործական ուժեր, նպաստում նրա համակողմանի զարգացմանը։ Նոր մարդու մասսայական ձևավորումը սոցիալիզմի մեծագույն նվաճումն է, բանվոր դասակարգի մարքս-լենինյան գաղափարախոսության ուժի ու կենսունակության իրական մարմնացումը։

Բանվոր դասակարգի նյութական ու հասարակական-քաղաքական գործունեությունը, նրա քաղաքական փորձը, գաղափարական ու բարոյական հատկությունները ամենաակտիվ ազդեցությունն են ունենում սոցիալիստական հասարակության ամբողջ հոգևոր ոլորտի, նրա կուլտուրայի ձևավորման վրա, հանդիսանում այն հիմքը, որի վրա խարսխվում են առաջավոր գաղափարական-բարոյական նորմերն ու արժեքները։ Բանվոր դասակարգի աշխատանքային հերոսությունը, նրա անսահման նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին, կոլեկտիվիզմն ու ինտերնացիոնալիզմը, նորի զարգացած զգացողությունը, թերությունների նկատմամբ անհաշտվողականությունը, հասարակական շահերով ղեկավարվելու պատրաստակամությունն ու կարողությունը հսկայական գաղափարական-դաստիարակչական նշանակություն ունեն։ Հիմնարար խնդիրների լուծման մեջ բանվոր դասակարգի նոր փորձի ուսումնասիրումը մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման մշտական աղբյուր է։

Սոցիալիստական հասարակության հոգևոր կյանքի վրա բանվոր դասակարգի ազդեցության աճը պայմանավորված է ինչպես նրա օրինակի ուժով, այն գծերով ու հատկանիշներով, որ նա իր մեջ զարգացնում է պրակտիկ գործունեության ընթացքում, կուսակցության գաղափարախոսական աշխատանքի, նրա քաղաքականության ներգործությամբ, այնպես էլ այն դիրքով, որ նա գրավում է կուսակցության և պետության մեջ, հասարակության քաղաքական կազմակերպման ողջ սիստեմում, նյութական արտադրության ոլորտում, սոցիալիստական տնտեսական հարաբերությունների հաստատման ու զարգացման գործում։ Այն ելակետային դիրքերը, որ բանվոր դասակարգը գրավում է մեր հասարակության մեջ, նրա առջև լայն հնարավորություններ են բացում



սիստեմատիկաբար ու նպատակասլաց ազդելու նաև գաղափարական ու բարոյական կյանքի, ընդհանուր առմամբ, կուլտուրայի զարգացման վրա։

Կուսակցությունն իր քաղաքականության մեջ լրիվ չափով հաշվի է առնում հասարակության և նրա հոգևոր կյանքի ու արժեքների զարգացման մեջ բանվոր դասակարգի առաջատար դերը անշեղորեն ամրապնդելու օբյեկտիվ անհրաժեշտությունը։ Այդ պատճառով էլ նա հետևողականորեն իրականացնում է այնպիսի մի կուրս, որը ընդլայնում է բանվոր դասակարգի ռեալ հնարավորությունները՝ մշտապես գտնվելու իր բարձր ու պատվավոր կոչման մակարդակի վրա։

Բանվոր դասակարգի գաղափարայնության և գիտակցականության աճը նրան հնարավորություն է տալիս ամենատարբեր ուղղություններով ու ձևերով ավելի ու ավելի ակտիվորեն ազդելու հասարակության հոգևոր կյանքի և նոր մարդու դաստիարակության վրա։ Այսպես, արտադրության մեջ արմատավորելով գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները, բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, ստեղծելով ավելի կատարյալ տեխնիկա, նա իր գործունեությամբ հեղափոխիչ ներգործություն է ունենում ամբողջ ժողովրդական տնտեսության ու նրա կառուցվածքի վրա, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի մարդկանց, քաղաքի ու գյուղի միջև եղած էական տարբերությունների վերացման պրոցեսները արագացնելու վրա։ Իսկ դա իր հերթին ավելի ու ավելի է ամրապնդում մասսաների կոմունիստական գիտակցականության աճի օբյեկտիվ գործոնները։

Բանվոր դասակարգի լայն ու գործուն մասնակցությունը սովետներին, արհմիություններին և հասարակական մյուս կազմակերպություններին ապահովում է դեմոկրատական, ինքնագործունեության սկզբունքների խորացումը դրանց աշխատանքում, հասարակական կյանքի վրա նրանց ազդեցության բարձրացումը, այն բազմապիսի պրոբլեմների առաջադրումն ու լուծումը, որոնք կապված են աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, ժողովրդական կրթության, առողջապահության օրգանների, ծառայությունների ամբողջ ոլորտի աշխատանքի բարելավման հետ։

Սովետական բանվոր դասակարգը մասսայական կազմակերպությունների գործունեության մեջ զարգացնում է այնպիսի կարևոր գծեր, ինչպիսիք են՝ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, կոլեկտիվիզմը հարցերի քննարկման ու լուծման գործում, գործարարությունն ու զգայունությունը աշխատավորների պահանջների ու շահերի նկատմամբ, անհաշտվողականությունը բյուրոկրատիզմի, ցուցամոլության, ֆորմալիզմի նկատմամբ։ Գործի հանդեպ, հասարակական պրոբլեմների առաջադրման ու լուծման նկատմամբ նրա մոտեցումը աչքի է ընկնում գաղափարայնությամբ, սկզբունքայնությամբ և համարձակությամբ։ Դա հսկայական ազդեցություն է ունենում ողջ գաղափարաբարոյական մթնոլորտի վրա այն կոլեկտիվներում և հասարակական կազմակերպություններում, որտեղ ներկայացված է բանվոր դասակարգը։ Ահա ինչու առաջավոր արտադրական կոլեկտիվները ծառայում են որպես մարդկանց դաստիարակության լավ դպրոց, երիտասարդությանը պատվաստում այդ դասակարգի գաղափարական-քաղաքական ու բարոյական հարուստ փորձը, նրան դաստիարակում հեղափոխական ու աշխատանքային փառապանծ ավանդույթների ոգով։ Չափազանց կարևոր է հաշվի առնել նաև այն, որ բանվոր դասակարգի շրջանում առավել լրիվ հաղթահարված են սոցիալիզմին խորթ, բայց մեր հասարակության մեջ դեռևս իրենց զգացնել տվող այնպիսի վերապրուկներ, ինչպիսիք են՝ ինդիվիդուալիզմը, էգոիզմը, կարիերիզմը, ստորաքարշությունն ու գռփողականությունը։

Կուսակցությունն իր քաղաքականության մեջ, գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի հերթական խնդիրները որոշելիս, մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցները, արվեստի ու գրականության ոլորտները կողմնորոշելիս, լիովին հաշվի է առնում բանվոր դասակարգի նվաճումները մարդու նոր գծերի ու հատկությունների, կյանքի ու աշխատանքի

նկատմամբ իր միջավայրում ձևավորված առաջավոր հայացքների զարգացման գործում: Կուսակցությունն այդ օրինակները բարձրացնում է «վահանի վրա», դրանք դիտելով իբրև յուրատեսակ էտալոն, իբրև մի բարձունք, ուր պետք է հասցնել աշխատավորների ողջ մասսային:

Կուսակցությունը հաշվի է առնում արվեստի ու գրականության վիթխարի դերը այդ պրոցեսի արագացման համար: Դարաշրջանի ոգու, երկրի կյանքի, մեր ժամանակի իսկական հերոսի՝ աշխատանքի մարդու խոհերի ու ձգտումների, նրա կենսական դիրքերի, նրան հուզող պրոբլեմների, փոխհարաբերությունների գեղարվեստական,պատկերավոր խոր արտացոլումը գրականության ու արվեստի լավագույն ստեղծագործությունները դարձնում են կոմունիստական դաստիարակության հուժկու միջոցներ, բանվոր դասակարգի գաղափարախոսության ու քաղաքականության կենսագործման ակտիվ ազդակներ:

Ինչպես տեսնում ենք, բանվոր դասակարգի ազդեցությունը հասարակության հոգևոր կյանքի վրա տեղի է ունենում բազմազան ուղղություններով ու ձևերով, անմիջական և միջնորդավորված, սոցիալական տարբեր պրոցեսների ու ինստիտուտների միջոցով: Այդ ուղիները, միջոցներն ու ձևերը միանալով կազմում են մի միասնական դինամիկ սիստեմ և գործում են խիստ դասակարգային նպատակասլացությամբ:

Հասարակության հոգևոր կյանքի վրա բանվոր դասակարգի հարաճուն ազդեցության կարևոր աղբյուրը նրա քաղաքական ու բարոյական բարձր հեղինակությունն է:

Խոր ու անկեղծ է մյուս բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի հարգանքը բանվոր դասակարգի նկատմամբ: Նման հեղինակությունն ու հարգանքը նվաճվել են ժողովրդի շահերի համար այդ առաջավոր դասակարգի մղած տասնամյակների հերոսական պայքարով, այն դերով, որ նա կատարել է աշխատավորների կյանքը սոցիալիզմի հիմունքներով վերափոխելու գործում, այն անշահախնդիր օգնությամբ, որ նա շարունակ ցույց է տալիս նրանց այդ մեծ ու դժվարին գործում:

Է՛լ ավելի է աճել գաղափարախոսական գործոնի, ամբողջությամբ վերցրած մասսաների գիտակցականության նշանակությունը կոմունիստական շինարարության արդի էտապում, երբ հասարակական առաջընթացի տեմպերը մեծ չափերով, ավելի քան երբևէ անցյալում, անմիջականորեն պայմանավորված են հասարակական բոլոր գործոններին աշխատավորների հարաճուն մասնակցությամբ, նրանց գիտելիքներով, կուլտուրայով, սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարման, վերահսկողության ու կարգավորման բարդ հարցերում նրանց լավատեղյակությամբ: Այսպես, օբյեկտիվորեն մեծ հրատապություն են ստացել կառավարումը կատարելագործելու, այն որակապես նոր աստիճանի բարձրացնելու հարցերը: Առանց այդ խնդրի լուծմանը մասսաների հարաճուն մասնակցության, անհնար են հասարակական բարդ օրգանիզմի ներդաշնակ զարգացումը, նրա բոլոր մեխանիզմների ու օղակների գործողության հստակության ու ներդաշնակության ապահովումը: Բարդացել են հասարակական կյանքի բազմապիսի գործոնների փոխադարձ կապերի սիստեմները, ընդլայնվել են տնտեսական, սոցիալական և կուլտուրական վերափոխումների սահմաններն ու մասշտաբները, սուր պահանջ է առաջացել ավելի լրիվ միավորելու արդի գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ: Կոմունիստական շինարարության արդի փուլում զգալիորեն աճել է մասսաների գիտելիքների, կուլտուրայի, կրթվածության, նրանց գաղափարայնության ու բարոյականության նկատմամբ առաջադրվող պահանջների մակարդակը:

Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Մեր սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ժամանակակից մակարդակը, գիտա-տեխնիկական առաջընթացի՝ մեր օրերում ձեռք բերված մակարդակը ամենաբարձր պահանջներն են ներկայացնում ոչ միայն աշխատողների զուտ պրոֆեսիոնալ որակավորմանը, այլև նրանց աշխատանքային կարգապահությանը, հստակությանը, կազմակերպվածությանը: Առանց դրա մենք պարզապես չենք կարող կատարել այն



շատ բարդ խնդիրները, որոնք առաջադրում է ժամանակակից կյանքը» (ՍՍՀՄ **կազմավորման 50 տարին**, 1973, էջ 62—63):

Արտադրության ինտենսիվացման, ինչպես նաև աշխատանքի կազմակերպման, կառավարման մեթոդների կատարելագործման խնդիրների լուծման գործում առանձնապես բարձր պատասխանատվություն է ընկնում բանվոր դասակարգի վրա: Կուսակցությունը ձգտում է այն բանին, որ սովետական բոլոր բանվորները հավասարվեն այդ դասակարգի առաջավոր ջոկատին, որը բարձր գիտակցականություն ու կազմակերպվածություն, գաղափարական ու բարոյական հասունություն է ցուցաբերում գիտա-տեխնիկական առաջընթացի համար մղվող պայքարում, լայնորեն ու ակտիվորեն մասնակցում է երկրի հասարակական կյանքին: Սովետական բանվորները գնալով ավելի են գիտակցում, որ իրենք գտնվում են գիտա-տեխնիկական առաջընթացի ամենաառաջավոր ու պատասխանատու բնագծերում, որտեղ, մի կողմից, առավել լրիվ են օբյեկտիվանում (աշխատանքի գործիքների, դրա կազմակերպման, իրեղեն արդյունքների մեջ) առաջավոր գիտա-տեխնիկական մտքի նվաճումները, իսկ մյուս կողմից, սկզբնավորվում է այդ պրոցեսի ազդեցությունը ամբողջ սոցիալիստական էկոնոմիկայի վերակառուցման ու վերելքի, նրա արդի մակարդակի վրա:

Հազարավոր ու հազարավոր առաջավոր արտադրական կոլեկտիվների պրակտիկան ցույց է տալիս, որ սովետական բանվորները գնալով ավելի շատ են գիտակցում իրենց աշխատանքի, ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության դերը ամբողջ հասարակության հետագա առաջընթացի համար: Այդ բարձր գիտակցականությունը արտահայտվում է տեխնիկական լայն ստեղծագործության, աշխատանքի գիտական կազմակերպմանը հարաճուն մասնակցության, վերահսկողության ու կառավարման գործում հասարակական հիմունքների զարգացման, աշխատանքային կոլեկտիվներում երիտասարդության դաստիարակության հարցերի նկատմամբ ուշադրության ուժեղացման մեջ և շա՜տ ու շատ այլ բաներում: Բանվորական կոլեկտիվները առաջավոր փորձի փոխանակումներ են կազմակերպում ոչ միայն երկրի ներսում, այլև սոցիալիստական մյուս երկրների կոլեկտիվների հետ, դրանով զարգացնելով իրենց ինտերնացիոնալիստական գիտակցությունը՝ բանվոր դասակարգի ստեղծագործական ակտիվության և նախաձեռնության կարևոր աղբյուրը:

Ինչպես տնտեսական, այնպես էլ գաղափարախոսական ու դաստիարակչական վիթխարի նշանակություն ունեն առաջավոր բանվորների՝ գնալով ավելի լայն տարածում գտնող նախաձեռնությունները աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, հումքն ու նյութերը տնտեսելու, հարակից պրոֆեսիաներին տիրապետելու, կոմպլեքսային բրիգադաներ ստեղծելու գործում նրանց մասնակցությունը նորարարությանն ու գյուտարարությանը, ձեռնարկությունների աշխատանքների որակական ցուցանիշների տնտեսական վերլուծությանը: Մասսայական նախաձեռնության այս և նման այլ ձևերը գաղափարախոսական հսկայական լիցք են պարունակում իրենց մեջ: Դրանք առարկայորեն ու կոնկրետ կերպով միլիոնավոր բանվորների դաստիարակում են աշխատանքի հանդեպ, հասարակության ու պետության կառավարման գործի նկատմամբ նոր վերաբերմունքի ոգով, սովորեցնում են ավելի լավ հասկանալ անձնական ու պետական շահերի միասնությունը և գործնական ունակություն ու պատրաստակամություն մշակել այդ միասնությունը կյանքում հաստատելու համար:

2.

Մարքս-լենինյան տեսությունը բացահայտում է կոմունիստական անհատի ձևավորման ընդհանուր օրինաչափությունները, որոշում է այդ պրոցեսի հիմնական էտապները, նրա արժեքների կառուցվածքի տարբեր տարրերի ու կողմերի փոխադարձ կապը, տվյալ պրոցեսի օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների դիալեկտիկան: Դրանով իսկ նա կուսակցությանը զինում է հստակ կողմնորոշիչով՝ կոմունիստական շինարարության այդ ամենադժվարին խնդրի լուծման համար մղվող պայքարում: Նոր մարդու ձևավորման օրինաչափ տեն-

ղենցները, որ բացահայտել է մարքսիզմ-լենինիզմը, օրգանապես կապված են բանվոր դասակարգի պայքարի ու ստեղծագործության պրակտիկայի հետ: «Ինչպես կոմունիստական գիտակցության... մասսայական առաջացման համար, այնպես էլ բուն նպատակին հասնելու համար,— գրել են մարքսիզմի հիմնադիրները,— անհրաժեշտ է մարդկանց մասսայական վերափոխում, որը հնարավոր է միայն պրակտիկ շարժման մեջ, հեղափոխության մեջ. հետևաբար, հեղափոխությունն անհրաժեշտ է ոչ միայն այն պատճառով, որ ուրիշ ոչ մի եղանակով հնարավոր չէ տապալել տիրապետող դասակարգին, այլև այն բանի համար, որ տապալող դասակարգը հեղափոխության մեջ միայն կարող է իրենից թոթափել ամբողջ հին նողկանքը և ունակ լինել ստեղծելու հասարակության նոր հիմք» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 70):

Մեր երկրի բանվոր դասակարգը, կուսակցության ղեկավարությամբ կատարելով մեծագույն սոցիալական հեղափոխությունը, կառուցելով նոր կյանք, այդ «պրակտիկ շարժման» մեջ ձեռք էր բերում կոմունիստական գիտակցություն, կոփվում գաղափարապես ու բարոյապես: Զարգացած սոցիալիզմի հասարակությունում բանվոր դասակարգի աշխարհայացքի ու բարոյականության կրողներն են դարձել միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ, որոնք ներկայացնում են երկրի բոլոր դասակարգերն ու սոցիալական խմբերը, բոլոր ազգերն ու ազգությունները:

Մարդու հոգևոր աշխարհի ձևավորման պրոցեսն իր ամբողջ բարդությամբ ու բազմագործոնայնությամբ հանդերձ, միևնույն ժամանակ ենթակա է ընդհանուր օրինաչափությունների գործողությանը: Անհատի մեջ կյանքի, հասարակության, պետության նկատմամբ, նրա քաղաքական ու բարոյական դնահատականների բնույթի նկատմամբ նոր հայացքների ձևավորման վրա որոշիչ ազդեցություն են ունենում սոցիալիզմի նյութական և սոցիալ-քաղաքական հարաբերությունները (արտադրության միջոցների սեփականության սոցիալիստական ձևը, որը պայմանավորում է մարդկանց համագործակցության և փոխօգնության հարաբերությունները, բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի արմատական շահերի ընդհանրությունը), սոցիալիստական կուլտուրան, հասարակության հոգևոր մթնոլորտը և այլն: Մարդկանց միջև հասարակական նոր հարաբերությունների հաստատումը, ինչպես նաև ընդհանուր առմամբ այն հիմքի զարգացումը, որի վրա ձևավորվել են անհատի հայացքներն ու արժեքները, սոցիալիստական ապրելակերպը, պատմականորեն ընթացել և այժմ էլ ընթանում են որպես կուսակցության առաջադրած տնտեսական, սոցիալական և կուլտուրական պրակտիկ խնդիրների լուծմանը մարդկանց, լայն մասսաների մասնակցության պրոցես (և արդյունք): Դա ամենից առաջ սոցիալիզմի կառուցման ու զարգացման սկզբունքների իրականացումն էր, որոնք որոշվում են մարքսիզմ-լենինիզմի բաղաքական գաղափարախոսությամբ:

Քաղաքական գաղափարախոսության դերի և մասսայական գիտակցության ու պրակտիկ գործունեության կողմնորոշման վրա նրա ունեցած գործուն ազդեցության հետ ամենից առաջ կապված են հասարակական կյանքի այն արմատական վերափոխումները, որոնց հիման վրա մյուս դասակարգերի ու սոցիալական խմբերի կենսական շահերը համընկան բանվոր դասակարգի շահերին, իսկ նրա գաղափարախոսությունը, ընդհանուր առմամբ, պաշտպանություն գտավ բոլոր աշխատավորների կողմից, ձեռք բերեց համաժողովրդական բնույթ:

Միլիոնների սոցիալ-քաղաքական փորձի, նրանց կյանքի նոր պայմանների, աճող կուլտուրայի ու գիտելիքների վրա հենվող իրավական, բարոյական, փիլիսոփայական, գեղագիտական և այլ հայացքները (և համապատասխան արժեքները) բանվոր դասակարգի քաղաքական գաղափարախոսության դիրքերից փոխազդում են, կազմելով մասսաների ու անհատի ներքուստ ամբողջական ու դինամիկ հասարակական գիտակցության կողմերը: Այդ միասնությունը արտահայտվում է ինչպես սովետական առաջավոր մարդու մտածողության և



գիտակցության առանձնահատկությունների, այնպես էլ նրա բնավորության գծերի մեջ:

Հայտնի է, որ նրա գիտակցության ներդաշնակությունը կոմունիստական համոզվածության պարտադիր նախապայմանն է. այն ապահովում է մտածողության տրամաբանական կուռ կառուցվածքը, գիտական սկզբունքների հիման վրա իրականության նկատմամբ մոտեցման ինքնուրույնությունը և որոշումների ու գործողությունների խոր պատճառաբանվածությունը: Գիտակցության նման ներդաշնակությունը գաղափարական հասունություն և գործունություն է հաղորդում մարդու արժեքային կողմնորոշումներին և կենսական նպատակադրումներին, ծնում է դժվարությունները հաղթահարելու էմոցիոնալ-հոգեբանական, կամային ու բարոյական պատրաստակամություն: Բայց նոր մարդու գիտակցության այդ առանձնահատկություններն ու բնավորության գծերը չեն կարող զարգանալ, եթե դրանց ձևավորման գործում որոշիչ դեր չկատարի բանվոր դասակարգի քաղաքական գաղափարախոսությունը: Այստեղից հասկանալի է, թե ինչու ինքը՝ բանվոր դասակարգը, մյուս դասակարգերի ու սոցիալական խմբերի համեմատությամբ իր շրջապատում ձևավորում է ավելի հասուն անհատներ՝ ամբողջական գիտակցությամբ (խոսքը տենդենցի, տիպականի, առավել մասսայականի, այլ ոչ թե եզակիի մասին է):

Որպեսզի այդ պրոցեսն ավելի ինտենսիվ ընթանա, կուսակցությունը բացառիկ նշանակություն էր տալիս և այժմ էլ տալիս է մասսաների գաղափարական-քաղաքական դաստիարակությանը, լիովին հաշվի առնելով, որ նման դաստիարակության համար կարևորագույն դպրոց է նրանց մասնակցությունը տնտեսական ու սոցիալական վերափոխումներին: Այդ պրակտիկ գործունեության հիման վրա, գիտակցորեն իրականացնելով կուսակցության քաղաքականությունը, լոզունգները և միաժամանակ բարձրացնելով իրենց կուլտուրական մակարդակը, ստանալով սիստեմատիկ կրթություն, հաղորդակից դառնալով առաջավոր կուլտուրայի արժեքներին, մարդիկ ավելի խորն են տիրապետում նաև աշխարհայացքային-փիլիսոփայական գիտելիքներին, զարգացնում իրենց գեղագիտական հայացքները:

Գործնականորեն իրականացնելով իր ինտերնացիոնալ քաղաքականությունն ու գաղափարախոսությունը, բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես այդ գաղափարախոսության առաջին և առավել հետևողական ու մասսայական կրողը: Պակաս կարևոր չէ նաև այն, որ գիտա-տեխնիկական հեղափոխությունը բանվոր դասակարգի գործունեության միջոցով առավել լրիվ ազդում է նյութական արտադրաուժերի ինտերնացիոնալացման, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների հասարակական կապերի ամրապնդման, աշխատանքի բաժանման խորացման վրա, երկրում, ինչպես նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մասշտաբներով մասնագիտացման ու կոոպերացման վրա: Դրանով բանվոր դասակարգը ամրապնդում է ինտերնացիոնալիզմի նյութական հիմքերն ու գաղափարական դիրքերը, այն արմատավորում սովետական մարդկանց կենսաձևի, կուլտուրայի և արժեքների մեջ:

Բանվոր դասակարգի քաղաքական գաղափարախոսության ներգործության շնորհիվ, որն ամրապնդվում ու խորանում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների ամբողջ սիստեմով, հասարակության կենսագործունեության դեմոկրատական սկզբունքներով, քաղաքական պրոպագանդայով ու ագիտացիայով, աշխատավորների բազմամիլիոնանոց մասսաները դառնում են կոմունիստական կուսակցության քաղաքականության գիտակից կիրառողներ:

Բանվոր դասակարգի, ամբողջ ազգաբնակչության կուլտուրական մակարդակի աճը, սոցիալիզմի ժառանգած ու բազմապատկած՝ համաշխարհային կուլտուրայի նվաճումների միասնացումը միլիոնների կյանքի, նրանց ամբողջ հոգևոր աշխարհի հետ, ծառայում են որպես ներդաշնակ, ամբողջական անհատի ձևավորման, նրա ընդունակությունների ու տաղանդի զարգացման, պահանջմունքների վեհացման ու ազնվացման պարտադիր պայման:

Արտահայտելով բանվոր դասակարգի կամքն ու կենսական շահերը, կուսակցությունը կազմակերպեց ու գլխավորեց իր մասշտաբներով վիթխարի

կուլտուրական հեղափոխությունը: Դա ամենևին չէր նշանակում աշխատանքի մարդու առջև ձևականորեն բացել համաշխարհային կուլտուրայի գանձարանի դռները: Դրա շնորհիվ աշխատավոր մարդու մոտ գնալով ավելի լրիվ կերպով էր զարգանում ներքին պահանջմունքը՝ մտնել այդ սքանչելի աշխարհը, դառնալ նրա իսկական տերը: Ինքը՝ այդ պահանջմունքը, չէր մնում լոկ ցանկության մակարդակի վրա. նյութապես ու սոցիալականորեն, գաղափարապես ու բարոյապես այն ամրապնդվում էր իրականացման ռեալ հնարավորություններով, որոնք ստեղծվում են ժողովրդական լուսավորության ու կրթության վիթխարի ծավալման, մասսաների բարեկեցության ընդհանուր աճի ընթացքում: Այս գիտական և խոր մարդասիրական կուրսը կուսակցությունը հետևողականորեն ու անշեղորեն շարունակում է նաև այժմ: Սովետական բանվորների կենսամակարդակի աճը և նրանց ազատ ժամանակի ավելացումը նպաստում են այն բանին, որ նրանք ավելի լրիվ են հաղորդակցվում կուլտուրային, արվեստին, գիտությանը, ավելի ակտիվորեն են զբաղվում ինքնագործ գեղարվեստական ստեղծագործությամբ: Այդ պրոցեսներն իրենց հերթին խթանվում են աշխատանքի կուլտուրայի նկատմամբ այն նոր պահանջներով, որոնք օբյեկտիվորեն ներկայացվում են բանվորին՝ արդյունաբերական արտադրության տեխնիկայի ու տեխնոլոգիայի բուն հիմքերի հեղափոխական վերափոխումների պայմաններում:

Առաջավոր գաղափարների միասնությունը կոմունիստական վիթխարի իրագործումների հետ, մտքի և ամենօրյա պրակտիկայի միասնությունը բնութագրում են առաջավոր սովետական մարդու անձնավորությունը: Ինքը՝ բանվոր դասակարգը, անշեղորեն ամրապնդում է այդ միասնության հիմքը՝ սոցիալիստական տնտեսական հարաբերությունները, և իր օրինակով որոշիչ ազդեցություն է ունենում աշխատանքի կազմակերպման, բոլոր աշխատավորների հայացքների ու արժեքների մեջ կոլեկտիվիզմի սկզբունքների արմատավորման վրա:

«Միայն կոլեկտիվում է անհատը ստանում այն միջոցները, որոնք նրան հնարավորություն են տալիս համակողմանիորեն զարգացնելու իր ձիրքերը և, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 75):

Կոմունիստական բարոյականության տեսության մշակումը, նրա էության, սոցիալական դերի, ձևավորման ուղիների հիմնավորումը, ինչպես և ընդհանրապես սոցիալիզմի օրոք աշխատավորների գաղափարական ու բարոյական դաստիարակության հարցերի մշակումը Վ. Ի. Լենինի մեծագույն ծառայություններից են: Այս պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը Վ. Ի. Լենինը քննում ու լուծում էր մարդու կոմունիստական իդեալի համար մղվող պայքարում բանվոր դասակարգի առաջատար դերի և այդ ճանապարհին սովետական մարդու առջև ծառացած խնդիրների հետ օրգանական կապի մեջ: Այդ դիրքերից էլ Վ. Ի. Լենինը բնորոշում է ինչպես նոր բարոյականության բովանդակությունն ու դերը, այնպես էլ այն օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների բնույթը, որոնք հնարավորություններ են ապահովում նոր բարոյականությունը աշխատավորների ամբողջ մասսայի սեփականությունը դարձնելու համար:

Մեր հասարակության բարոյականության աղբյուրը հեղափոխական պրոլետարիատի բարոյականությունն էր, որը ձևավորվել է շահագործողական հասարակության դեմ այդ դասակարգի մղած սոցիալական սուր մարտերում: Դեռ այն ժամանակ էին ձևավորվել պրոլետարական մարտիկների հիանալի հատկությունները՝ արիությունը, անընկճելի կամքը, ամեն տեսակ դժվարություններ հաղթահարելու, բանվորական գործի համար զոհվելու պատրաստակամության, դասակարգային, ինտերնացիոնալ համերաշխության զգացումը, սոցիալական օպտիմիզմը: Հեղափոխական պրոլետարիատը առավել լրիվ կերպով է ժառանգել ու նոր հասարակությանը հասցրել նաև հայրենասիրության, արդարության ժողովրդական ազնիվ զգացմունքները, աշխատանքի մարդկանց դարավոր ձգտումները դեպի հավասարություն և եղբայրություն:

Բայց բարոյական այդ արժեքների ամբողջ մեծ նշանակությամբ հան-



դերձ, դրանք կոմունիստական բարոյականության առաջին աստիճանն ու նախապայմանն էին միայն: Սոցիալիզմին անցնելու հետ միաժամանակ այդ արժեքներն ու նորմերը անհրաժեշտ էր հարստացնել ու զարգացնել փոփոխված հասարակական պայմանների, բանվոր դասակարգի նոր խնդիրների համեմատ: Պահանջ զգացվեց նաև ստեղծել բարոյական նոր նորմեր, որոնք որոշում են անհատի՝ որպես սոցիալիստական հասարակության անդամի, պարտքի ու պարտականությունների, որպես կոմունիզմ կառուցողի խղճի ու պատվի բովանդակությունը:

Բանվորական միջավայրում, բանվորական կոլեկտիվներում, աշխատանքային և հասարակական-քաղաքական գործունեության ընթացքում սաղմնավորվում և հաստատվում էին քաղաքացիականության, հայրենասիրական գիտակցության, աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի՝ սոցիալիզմի կառուցման պատմական յուրաքանչյուր էտապի համար առավել հասուն օրինակները, գիտակցության ու վարքագծի այն առաջավոր օրինակները, որոնք ժամանակի ընթացքում դառնում էին ընդհանուրի կողմից ընդունված նորմերի ձևեր, ծնում էին սոցիալիստական ավանդույթներ, լայն տարածում գտնելով մասսաների մեջ: Դա նոր մարդու ձևավորման ուղին էր:

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որ շարադրված է կուսակցության ծրագրում, հիմնվելով նոր բարոյականության ձևավորման գործում սոցիալիզմի մեծ նվաճումների վրա և ելնելով կոմունիստական շինարարության խնդիրներից, անհատի վրա դնում է բարձր ու ծանրակշիռ բարոյական պարտականություններ:

### 3

Տեսության ու պրակտիկայի, խոսքի ու գործի միասնության համար,— իսկ դա կոմունիստական բարոյականության գլխավոր առանձնահատկություններից է,— յուրաքանչյուր անհատի համար բացառիկ նշանակություն ունեն աշխատանքի ու տնտեսավարության, հայրենասիրական, ինտերնացիոնալիստական և կոլեկտիվիստական վարքագծի լավագույն օրինակների պրոպագանդումը, ինչպես նաև մասսայական հասարակական կարծիքի ձևավորումը, որը բարոյապես խրախուսում է նրանց, ովքեր հետևում են այդ օրինակներին: Այդ խնդիրը միշտ գտնվել է կուսակցական և սովետական կազմակերպությունների, արհմիությունների, կոմերիտմիության, մասսայական ինֆորմացիայի միջոցների ուշադրության կենտրոնում:

Բանվոր դասակարգը եղել ու մնում է առաջին ճանապարհ հարթողը ոչ միայն էկոնոմիկայի, նյութական արտադրության ոլորտում, այլև հարաբերությունների այնպիսի առաջավոր օրինակների ու նորմերի հաստատման ու տարածման գործում, որոնք ուղենիշ են դառնում մարդու «բնության» կատարելագործման համար: ԳՈԷԼՌՈ-ն, Մագնիտկան, Կուզնեցկի առաջին դոմնաները, Բելոմորկանալը, Թուրքսիբը, Ամուրի Կոմսոմոլսկը եղել են ոչ միայն տնտեսական վերելքի գործոններ, երկրի նյութական հզորության աճի աղբյուրներ: Եվ ԿամԱԶ-ը, Տյումենը, ԲԱՄ-ը, յուրացվող և տնտեսական ինտենսիվ կյանքի մեջ ներգրավվող Հյուսիսի ու Սիբիրի անծայրածիր տարածությունները կծառայեն ոչ միայն սոցիալիզմի առաջին երկրի նյութական հզորության բազմապատկմանը: Դրանք նաև կոմունիզմի ոգով սերունդների դաստիարակման դպրոցի յուրաքանչյուր էտապի համար ամենաառաջավոր այն ձուլարաններն ու դարբնոցներն են, որտեղ կոփվում է ազատ աշխատանքի ու մտքի թանկարժեք ձուլվածքը և ստուգվում դրա ամրությունը: Այդ ուղու վրա, բանվոր դասակարգի պայքարով ու փորձով կոլեկտիվիզմի, հայրենասիրական վարքագծի, ինտերնացիոնալիզմի նորմերը առարկայանում են նորանոր մարդկանց հայացքներում, կյանքի, հասարակության, իրենց կոչման նկատմամբ նրանց վերաբերմունքի մեջ, դառնում անհատի հոգևոր աշխարհի և կուլտուրայի կայուն առանցքը: Այս ամենին նպաստում են նաև անհատի վրա գաղափարական ներգործության բազմապիսի մեթոդները, որոնք ծնվում են բանվոր դասակարգի փորձից: Բանվոր դասակարգը, պատկերավոր ասած, ոչ միայն մայրուղիներ

է բացում նոր հայացքների ու արժեքների հաստատման համար։ Նա հյուսում է նաև դրանց սնման այն ամենանուրբ մազանոթների սիստեմը, այն բազմագույն ու բարդ նկարը, առանց որոնց անհնար է պատկերացնել անհատի հոգևոր աշխարհի ձևավորման պրոցեսների ողջ հարստությունը։ «Սովետական բնավորություն» հասկացությունը վճռական չափով առաջացել է ամբողջական ու կամային անհատի այն վառ օրինակի ազդեցությամբ, որը ծնունդ է առել այդ առաջավոր դասակարգի պայքարի ու ստեղծագործության ընթացքում, մի դասակարգ, որը վստահորեն ու վճռականորեն հաղթահարում է դեպի նպատակը տանող ճանապարհի բոլոր դժվարությունները։

Մեր ժամանակներում էականորեն աճել է բարոյական սկզբունքների նշանակությունը հասարակական կյանքում, յուրաքանչյուր անհատի գիտակցության և վարքագծի մեջ։ Կոմունիստական խոր գաղափարայնություն և համոզվածություն, խոսքերի ու գործերի բարոյական հասունություն՝ սրանք են այն պահանջները, որ հասարակությունը ներկայացնում է յուրաքանչյուր անհատի։

Սոցիալիստական հասարակական հարաբերությունների, նոր ապրելակերպի, կուսակցության ղեկավարությամբ կատարվող գաղափարախոսական ու դաստիարակչական վիթխարի աշխատանքի, կուլտուրայի և կրթության ընդհանուր աճի, երկրի գաղափարական ամբողջ մթնոլորտի ազդեցության տակ հասարակական գիտակցության մեջ անբաժան կերպով հաստատվել են կոմունիստական բարոյականության սկզբունքները։ Գնալով աճում է այն անհանդուրժողականությունը, որ սովետական առաջավոր հասարակայնությունը, և ամենից առաջ բանվոր դասակարգը, ցուցաբերում է հակահասարակական երևույթների ու դրանց կրողների նկատմամբ։ Մասսաների գիտակցության մեջ գնալով ավելի հստակ է դառնում այն ըմբռնումը, որ ընդհանուր գործին լուրջ վնաս են հասցնում հասարակական պրոբլեմների և հասարակական պարտքի նկատմամբ անտարբեր ու անհոգ մարդիկ, որոնք անցնում են սոցիալիստական կյանքի նորմերի ու կանոնների զանազան խախտումների կողքով, որոնց շահերը քաղքենիական բարեհաջողության ու անվրդովության նեղ շրջանակներից դուրս չեն գալիս։ Խորթ երևույթները հաղթահարելու համար չափազանց կարևոր է ամենուրեք կոմպլեքսային ձևով գործի դնել մեր հասարակության տրամադրության տակ եղած բոլոր միջոցները։ Այս գործում կարևոր դեր է պատկանում յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում բարոյական-հոգեբանական առողջ մթնոլորտի ստեղծմանը, լայն հրապարակայնության ապահովմանը, բարոյականության նորմերի ու կանոնների խախտումների ամեն մի փաստի նկատմամբ հասարակական ներգործուն կարծիքի ձևավորմանը, ընկերական դատարանների և բարոյական ներգործության մյուս միջոցների աշխատանքի ակտիվացմանը։

Յուրաքանչյուր աշխատավորի սոցիալական ակտիվության ձևերի զարգացումը, նրա ներգրավումը հասարակական կյանքի մեջ, նրա նախաձեռնության խրախուսումը, դաստիարակչական աշխատանքում ֆորմալիզմի ու կազյոնշչինայի դեմ մղվող պայքարը, նոր ավանդույթների ու ծեսերի ամրապնդումը կենցաղում՝ գործունեության այս և մի շարք այլ ուղղություններ արդյունավետորեն ծառայում են անցյալի վերապրուկների հաղթահարմանը։ Հետևողականորեն զարգացնելով կոլեկտիվիստական հարաբերությունները, հարաճուն շահագրգռվածություն ցուցաբերելով այն բանի նկատմամբ, որ ոչ միայն աշխատանքի ոլորտում, այլև մարդու կենսագործունեության բոլոր դրսևորումներում ամրապնդվեն կոմունիստական բարոյականության դիրքերը, բանվոր դասակարգը դրանով իսկ ավելի ակտիվորեն է իր շրջանում հաղթահարում խորթ երևույթները։ Բանվոր դասակարգը տոն է տալիս խորթ երևույթների դեմ,



սոցիալիստական կյանքի նորմերի ու կանոնների ամեն մի խախտման դեմ մղվող պայքարի ակտիվացմանը հասարակության մասշտաբով։ Իր ամբողջ կենսագործունեությամբ, աշխատանքով, ձգտումներով նա հաստատում է նորը, կոմունիստականը։

***

Սոցիալիզմի հաղթանակի հետ միասին բանվոր դասակարգի գաղափարախոսությունը ձեռք բերեց համաժողովրդական բնույթ։ Դա բանվոր դասակարգի, կոմունիստական կուսակցության մեծ նվաճումն է, նրա քաղաքականության գիտական հիմնավորվածության, սոցիալիստական կարգի հումանիստական խոր էության համոզիչ վկայությունը։

Սովետական մարդը իր մեջ մարմնավորում է շահերի միասնությամբ, ընդհանուր կամքով, կոմունիստական ձգտումներով միաձուլված՝ երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի լավագույն գծերն ու հատկությունները։ Դրա հետ մեկտեղ, ընդհուպ մինչև կոմունիզմի լիակատար հաղթանակը, նրա աշխարհայացքն ու բարոյականությունը կրելու են հետևողականորեն դասակարգային բնույթ։ Մարքս-լենինյան գաղափարախոսության գիտականությունն ու հեղափոխականությունը միլիոնների աշխատանքի ու մտքի վերափոխիչ ուժի, կուսակցության ղեկավարությամբ նպատակասլացորեն ու վստահորեն կոմունիստական ուղիով ընթանալու նրանց ընդունակության աղբյուրն են։ Դա ամբողջ հասարակության՝ բովանդակությամբ ու նպատակներով դասակարգային այնպիսի մի շարժում է, որն ընդունակ է միլիոններից յուրաքանչյուրին դարձնելու վառ ու ներդաշնակ անհատ։ Ավելին. որքան ավելի լրիվ են յուրաքանչյուր մարդու մեջ ձևավորվում կոմունիստի գծերն ու հատկությունները, այնքան ավելի դինամիկ է դառնում ամբողջ հասարակության զարգացումը։ Այդ դիալեկտիկան գնալով ավելի լրիվ է գործում արդեն զարգացած սոցիալիզմի էտապում, ավելի ու ավելի բարձր պահանջներ ներկայացնելով յուրաքանչյուր անհատի։ Եվ մեր օրերում առավել մեծ նշանակություն է ձեռք բերում բանվոր դասակարգի աչքի ընկնող դերը՝ գաղափարապես հասուն, կոմունիստական անհատի դաստիարակման գործում։

# ԳԻՏԵԼԻՔ ԵՎ ՌԵԱԼՈՒԹՅՈՒՆ

**Է. Բ. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*Վաթսունական թվականների սկզբից գիտելիքի պրոբլեմը դարձել է սովետական փիլիսոփայական գրականության մեջ ամենաբանավիճայիններից մեկը։ Եվ դա հասկանալի է. գիտելիքի պրոբլեմը և նրա հարաբերությունը իրականության հետ միշտ եղել ու մնում են ամեն մի փիլիսոփայական կոնցեպցիայի կենտրոնական պրոբլեմներից մեկը՝ սկսած Դեմոկրիտից ու Պլատոնից մինչև նոր ժամանակի փիլիսոփայությունը (Բեկոն, Հյում, Կանտ, Հեգել) և վերջապես արդի բուրժուական փիլիսոփայությունը (Ռասել, Այեր, Կառնապ, Ռայզեր և ուրիշներ)։*

*Սխալ կլիներ պնդել, թե մինչև 60-ական թվականները գիտելիքի պրոբլեմն ամենևին չի քննարկվել սովետական փիլիսոփայական գրականության մեջ։ Սակայն այդ քննարկումը կրում էր չտարբերակված բնույթ. պրոբլեմը չի առանձնացվում և հատուկ (ինքնուրույն) ուսումնասիրության առարկա չի դառնում, այլ փաստորեն փոխարինվում է բուն ճանաչողական պրոցեսի վերլուծությամբ։ Մինչդեռ պարզվում է, որ գիտելիքը որպես առանձին, հարաբերականորեն ինքնուրույն երևույթ համարելով միայն, կարելի է բացահայտել դրա՝ որպես իմացության դիալեկտիկորեն հակասական պրոցեսի տարրի իմացաբանական շատ առումներ։*

*Դա, իհարկե, չի նշանակում գիտելիքի՝ որպես հարաբերականորեն ձևավորված միավորի, անջատումն այդ գիտելիքի ձեռքբերման պրոցեսից։ Խոսքը միայն գիտելիքի պրոբլեմը ճանաչողական պրոցեսի ընդհանուր մեթոդաբանական պրոբլեմների մեջ տարրալուծելու անթույլատրելիության մասին է։*

*Վաթսունական թվականների սկզբին տվյալ պրոբլեմի մշակումը դեռևս գտնվում էր այն մակարդակի վրա, որ* Փիլիսոփայական հանրագիտարան *կազմողները (Մոսկվա, 1962, հ. 2) հարմար գտան նրա մեջ չմտցնել «Գիտելիք» կամ «Գիտական գիտելիք» հոդվածը։ Սակայն պրոբլեմի նկատմամբ հետաքրքրության հաջորդ բռնկումը հանգեցրեց այն բանին, որ այսօր արդեն կարելի է խոսել ոչ թե գիտելիքի ուսումնասիրության պրոբլեմի, այլ պրոբլեմատիկայի մասին։*

*Բացի այդ, պրոբլեմի բոլոր ասպեկտներն ուսումնասիրելու անհրաժեշտությունը թելադրվում է արտասահմանում, բուրժուական փիլիսոփայության շրջանակներում այդ պրոբլեմատիկայի մշակման ինտենսիվությամբ, որտեղ գիտելիքի պրոբլեմը ենթարկվում է համակողմանի՝ հոգեբանական, լեզվաբանական, իմացաբանական, տրամաբանական վերլուծության։ Հասկանալի է, որ այդ ամենն արվում է սուբյեկտիվ-իդեալիստական դիրքերից։*

*Սովետական փիլիսոփաների գիտական հետաքրքրությունները ևս բազմակողմանի են տվյալ պրոբլեմի քննարկման ժամանակ։ Առանձնապես հարկավոր է նշել Պ. Վ. Կոպնինի ծառայությունները, որը սովետական փիլիսոփայական գրականության մեջ գիտելիքի պրոբլեմի քննարկման նոր մակարդակի պիոներն ու նախաձեռնողն էր։*

*Հանրահայտ է, որ գիտելիքը գիտակցությանը վերաբերող երևույթներից*



*է և հանդիսանում է օբյեկտիվ աշխարհի արտացոլման արդյունք, հետևաբար, միաժամանակ պետք է ընդունել նաև գիտելիքի իդեալական բնույթը։ «Այն եղանակը, որով գոյություն ունի գիտակցությունը և որով ինչ-որ բան գոյություն ունի նրա համար, գիտելիքն է»,— գրել է Կ. Մարքսը (*К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, стр. 645*)։*

*Մարքսի այս միտքը թելադրում է, որ գիտակցությունը չի կարող իրականացվել այլ կերպ, քան գիտելիքի ձևով, իսկ գիտակցության մեջ չի կարող լինել ոչինչ, որը հնարավոր չլիներ որակել որպես գիտելիք։ Փիլիսոփայական մատերիալիզմի համար անվիճելի է նաև այն, որ այդ իդեալականը չի կարող գոյություն ունենալ նյութական որոշակի ձևերից դուրս. տվյալ դեպքում գիտելիքը (գիտակցությունը) չի կարող լինել նշանների տարբեր կազմավորումներից, նյութական սուբստրատից դուրս, որոնցից կարևորագույնները՝ լեզվական նշաններն են։*

*Տվյալ դեպքում կարևոր է նշել նաև Մարքսի դիտողությունն այն մասին, որ իմացությունը ոչ թե նյութական, այլ հոգևոր արտադրություն է, ոչ թե իրերի ծնունդ՝ իրենց հատկություններով, այլ գաղափարների, հասկացությունների, որոնց մեջ արտացոլվում են իրերը։ Սա է մարքսիզմի սկզբունքային տարբերությունը ինչպես օբյեկտիվ իդեալիզմից, այնպես էլ վուլգար, գռեհիկ մատերիալիզմի զանազան դրսևորումներից։ Եթե օբյեկտիվ-իդեալիստական մոտեցումը իդեալականը սկսում է ճանաչել որպես ինքնուրույն էություն, որը գոյություն ունի մատերիայից անկախ, ավելին, որը ծնում է նյութականը (իրեր), ապա վուլգար-մատերիալիստական մոտեցումը, ըստ էության, ժխտում է իդեալականը, ամեն ինչ հանգեցնելով նյութականին (իրեղենին)։ Այս ծայրահեղ կոնցեպցիաների մեջ կարելի է նկատել նյութականի և իդեալականի հարաբերության հակասական բնույթը։ Անկասկած, աշխարհում չկա ոչինչ, բացի մատերիայից ու նրա շարժման ձևերից, և իդեալականը՝ որպես առանձին էություն, գոյություն չունի անկախ մատերիայի շարժումից։ Իդեալականը նյութականն է՝ որպես վերջինիս բովանդակություն, որպես նրա արտացոլում մարդու գիտակցության մեջ։ Ինչպես գրել է Կ. Մարքսը՝ «Իդեալականը այլ բան չէ, քան նյութականը՝ փոխադրված մարդու գլխի մեջ և այնտեղ վերափոխված» (Նույն տեղը, հ. 23, էջ 2)։*

*Դրա հետ մեկտեղ իդեալականը գոյություն ունի որպես նյութականին հակադիր մի բան, բայց ոչ թե իրի ձևով, այլ որպես սուբյեկտի գործունեության ձև՝ օբյեկտի նկատմամբ ունեցած նրա հարաբերության մեջ։ Եվ այս իմաստով, որպես արտացոլական կերպար, ճանաչումը (գիտելիքը) կրում է իդեալական բնույթ, այն սուբյեկտի գործունեության ձև է։*

*Գիտելիքը իդեալական է, «բայց այն գոյություն ունի նաև ռեալ կերպով, գործնականորեն, ստանալով լեզվի նշանների զգայորեն ընկալվող որոշակի ձև, որի մեջ իրերի այդ ներքին ձևերը, կերպարները կապվում են որոշ տեսակի առարկաների (հնչյունների, գրավոր պատկերների և այլնի) հետ»* (П. В. Копнин. **Логические основы науки.** Киев, 1968, стр. 24—25)*։*

*Միանգամայն պարզ է, որ եթե գիտելիքը նյութականացած չլիներ լեզվի մեջ, ապա այն անօգտակար կլիներ, հնարավոր չէր լինի նրա հետ գործառնություններ կատարել, չխոսելով արդեն այն մասին, որ անկարելի է պատկերացնել դրա ոչ նշանային (աննյութական) գոյությունը։ Գիտակցության (գիտելիքի) առարկայնությունը ոչ միայն այն է, որ այն առարկայական աշխարհի արտացոլումն է. այստեղ ձեռք է բերվում նրա բովանդակության առարկայնությունը, գիտելիքի օբյեկտիվությունը, այլ ոչ թե նրա գոյության եղանակը։ Գոյության նյութական եղանակը գիտակցությունը (գիտելիքը) ձեռք է բերում լեզվի մեջ։ «Գիտելիքները ձեռք են բերում առարկայական բնույթ, դառնալով լեզու» (Նույն տեղը, էջ 25)։*

*Կ. Մարքսը բազմիցս նախազգուշացրել է իդեալականի գռեհկաբանականհասարակացրած ըմբռնումից։ Այն, որ իդեալականը միշտ գոյություն ունի որպես կոնկրետ զգայական իր, չպետք է հանգեցնի նյութականի ու իդեալականի նույնացման, յուրատեսակ «ապրանքային ֆետիշիզմի»։ Իդեալականի*

դառնում են գիտելիքի տարրական բջիջը հանդիսացող դատողության ձև: Ամենահասարակ էմպիրիկ դատողության մեջ անգամ (և դա քաջ հայտնի էր դեռևս Կանտին) տեղի է ունենում զգայականության տվյալների սինթեզ՝ տրամաբանական որոշակի ձևերի հիման վրա» (նույն տեղը, էջ 188):

Վերևում մենք գիտելիքը բնութագրեցինք որպես իմաստ. նշենք, որ դա գիտելիքի բնութագրումներից մեկն է, որը մեզ համար առանձնապես կարևոր է գիտելիքի իմացաբանական բնույթը, բացահայտելու համար: Պլատոնը, որ առաջին անգամ մտցրել է իմաստի կատեգորիան, այն հասկանում էր որպես կայունը օբյեկտի ընկալումների շարքում: Այդ կայունության բացահայտումը ձեռք է բերվում, ըստ Պլատոնի, խորհրդածությամբ, որով և ըմբռնում են էությունը: Այդպես էլ չտալով գիտելիքի հստակ բնորոշումը, Պլատոնը հակվում է գիտելիքը բնորոշելու որպես «պատկերացում՝ իմաստով»: Իմաստն այն է, որը կապում է Դեդալի արձանների նման միմյանցից փախչող զգայական ընկալումները՝ պատճառի մասին դատողությամբ: Իմաստի ըմբռնման այդպիսի տրադիցիան անցնում է փիլիսոփայության ամբողջ պատմության միջով, տարափոխվելով միայն հեղինակների փիլիսոփայական հայացքների համեմատ: «Իմաստ» հասկացությունը օգտագործվում է նաև այսօրվա գիտական գրականության՝ փիլիսոփայության, կիբեռնետիկայի, տրամաբանության, լեզվաբանության մեջ: Տրամաբանությունը իմաստի իր ըմբռնմամբ ելնում է այդ հասկացության՝ Գ. Ֆրեգեի վերլուծությունից (տե՛ս Б. В. Бирюков. **Теория смысла Готлоба Фреге.** В сб. **Применение логики в науке и технике**, М., 1960):

Կիբեռնետիկայում «իմաստ» հասկացությունը օգտագործելիս ելնում են Շեննոնի բնորոշումից, որը իմաստը բնութագրել է որպես ինվարիանտ՝ ինֆորմացիայի վերափոխումների ժամանակ: Այս բնորոշումը արտաքուստ նմանություն ունի իմաստի փիլիսոփայական ըմբռնման հետ, և դա հաճախ է հանդիպում փիլիսոփայական-տրամաբանական հետազոտություններում (օրինակ, Ի. Ս. Նարսկու և Մ. Վ. Պոպովիչի մոտ): Սակայն Ի. Ս. Նարսկին միանգամայն իրավացիորեն նշում է. որպեսզի այդ բնորոշումը ստանա փիլիսոփայական իմաստ, ապա պետք է ճշգրտվի այն տեսանկյունով, որով տարբերվում են «ինֆորմացիա» կատեգորիայի փիլիսոփայական և կիբեռնետիկական բովանդակությունները: Ճիշտ այդպես էլ մեքենայի կատարած ինֆորմացիայի վերափոխման բնույթը էականորեն տարբերվում է մարդկային մտածողության գործունեության բնույթից, երբ վերջինս վերամշակում է արտացոլման զգայական բովանդակությունը: Գիտակցությունը, որն օժտված է ստեղծագործական ակտիվ բնույթով, ունակ է կատարելու ընտրովի արտացոլում, հասնելով էության մեջ խորանալու այս կամ այն աստիճանին: Էության մեջ խորացումը միշտ կայունի, անփոփոխայինի բացահայտումն է, այն, ինչը կապված է օրինաչափության, իմաստի բացահայտման հետ: Սակայն, բացահայտված իմաստը կապված է էության մեջ խորանալու որոշ մակարդակի հետ, և այդ իմաստով այն փոփոխելի է: Կարելի է ասել, որ իմաստը փոփոխական է կայունի բացահայտման մեջ: Այդ հանգամանքի վրա ուշադրություն է դարձնում Դ. Պ. Գորսկին (Д. П. Горский. **Роль языка в познании.** В сб. **Мышление и язык**, М., 1957), երբ նշում է, որ միևնույն երևույթի արտացոլման մեջ կարելի է խոսել տարբեր իմաստների մասին՝ սովորական (առօրեական), գիտական, գեղարվեստական-գեղագիտական: Ըստ որում, գիտական իմաստը ևս միաձույլ չէ. կարելի է խոսել ֆիզիկական, քիմիական և այլ իմաստների մասին: Քանի որ մարդկային գիտակցությունն իրականացվում է ճանաչողական գործունեության նշված երեք ձևերով, ապա կարելի է ասել, որ ամբողջ գիտակցությունն ունի իմաստավորված բնույթ, այսինքն՝ միտում է բացահայտելու արտացոլվող օբյեկտի իմաստը:

Հետևաբար, գիտելիքի տարբեր մակարդակների (առօրեական, գիտական և գեղարվեստական) առանձնացումը հարկավոր է կատարել էության մեջ խորանալու տարբեր մակարդակների հիման վրա («առաջին կարգի էությունից դեպի երկրորդ կարգի էությունը»): Այս իմաստով ոչ մի կայուն սահման չկա



առօրեական և գիտական գիտելիքների միջև: Այդ սահմանը հարաբերական է և պատմականորեն անցողիկ: Իրենց զուգահեռ գոյությամբ գիտելիքի այդ մակարդակները պարտական են իմացաբանական այն տարբեր խնդիրներին, որ մարդու առաջ դնում է պրակտիկան՝ պահանջելով այս կամ այն աստիճանի խորացում էության մեջ: Ուստի, միանգամայն սխալ է գիտելիքի տարբեր մակարդակների ինչպես նույնացումը, այնպես էլ հակադրումը: Առօրեական և գիտական գիտելիքների հակադրումը կատարվում է այն հիման վրա, որ առաջինը, իբր, արտաքինի ճանաչումն է օբյեկտի մեջ (այսինքն՝ երևույթի), ուստի և հանդես է գալիս զգայությունների, ընկալումների ու պատկերացումների ձևով, իսկ գիտական գիտելիքն արտացոլում է ներքինը (էականականը) օբյեկտի մեջ և կրում է հասկացական բնույթ: Մեր շարադրած կոնցեպցիայի համաձայն, մարդու ճանաչողական գործունեության բոլոր ձևերը կրում են էականական (հասկացական) բնույթ. Պ. Վ. Կոպնինն առանձնապես ընդգծում է գիտելիքի կատեգորիալ բնույթը:

Վերոհիշյալից հետևում է, որ գիտելիքը չի կարող որակվել որպես հասարակ հայելանման արտացոլում իր ոչ մի, անգամ ամենատարրական ձևով: Զգայական տվյալները, լինելով արտացոլման ֆիզիոլոգիական-հոգեկան մակարդակի արդյունք, մտածողության ընտրող, դասակարգող և կառուցող գործունեության շնորհիվ մարդու մոտ ստանում են գիտելիքի սպեցիֆիկ ձև: Այսպիսով, գիտելիքը դառնում է մարդու ճանաչողական գործունեության արդյունք, որի նպատակն է բացահայտել օբյեկտիվ աշխարհի որոշակի օրինաչափությունները. իմացությունը դա ձգտումն է դեպի օբյեկտի էությունը և աստիճանական խորացումը նրա մեջ: Հանրահայտ է Վ. Ի. Լենինի միտքն այն մասին, որ իմացությունը շարժում է երևույթից դեպի էությունը, առաջին կարգի էությունից դեպի երկրորդ կարգի էությունը, որը բանալի է տալիս հասկանալու ինչպես իմացության բուն պրոցեսը, այնպես էլ բացահայտելու իմացության (գիտակցության)՝ գիտելիքի իրականացման միակ ձևի բնույթը: Գիտելիքը չի կարող չկրել օբյեկտիվ աշխարհի էականական արտացոլման բնույթ: Եթե հիշենք էության՝ որպես խորքայինի, կայունի լենինյան բնութագիրը կամ, արտահայտելով այսօրվա լեզվով, ինվարիանտայինի բնութագիրը, ապա գիտելիքը՝ որպես էությանը մոտենալու աստիճան, նույնպես կարող է բնութագրվել որպես զգայական ընկալումներում մեզ տրված օբյեկտի կայունի ու անփոփոխայինի ընկալում:

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԴԱՍՏԻՐԱԿՈՒՄԸ

Ռ. Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ կարևորություն տվեց սովետական մարդկանց գաղափարական դաստիարակությանը, այն համարեց նոր, կոմունիստական հասարակարգի կառուցման վճռական պայման։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, վերջերս քննության առնելով «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության մեջ գաղափարական կադրերի ընտրության ու դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքի մասին» հարցը, անդրադարձավ նաև աշխատավորների գաղափարական դաստիարակության, նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման խնդիրներին։ Դրանց պատշաճ լուծումը ՍՄԿԿ Կենտկոմը համարեց գաղափարական բնագավառի աշխատողների, կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ պարտքը։ Այդ հայտնի որոշմամբ կուսակցական կոմիտեներից ու գաղափարական կադրերից պահանջվեց դաստիարակչական աշխատանքի բոլոր միջոցներով աշխատավորներին ներգրավել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման և հասարակական գործերի կառավարման ստեղծարար գործունեության մեջ, յուրաքանչյուր մարդու մեջ ձևավորել ազնիվ նպատակներ և հոգևոր պահանջմունքներ, բարոյական վեհ վարքագիծ, նպաստել ազատ ժամանակի խելացի օգտագործմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի սույն որոշումը մեկ անգամ ևս վկայում է, որ աշխատավորական զանգվածների գաղափարական դաստիարակության, նրանց մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման հարցերը միշտ էլ գտնվել են մեր կուսակցության ուշադրության կենտրոնում, իսկ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում անհատի բազմակողմանի զարգացման գործում նշանակալիորեն մեծանում են կոմկուսակցության դերն ու նշանակությունը։

Սոցիալիզմը մեր երկրում վաղուց հաղթանակել է լիովին ու վերջնականապես։ Դրա շնորհիվ ձևավորվել է սովետական մարդու հոգեկան ու բարոյական նոր նկարագիրը, նրա մոտ արմատավորվել է սոցիալիստական գիտակցություն, որը վճռական դեր է խաղում մեր առաջընթացի ապահովման, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի գործում։

Բայց սոցիալիստական գիտակցությունը շատ բաներում տարբերվում է կոմունիստականից, որովհետև կրում է սոցիալիստական կեցության կնիքը՝ բաշխումն ըստ աշխատանքի, նյութական շահագրգռություն, տնտեսական որոշ անհավասարություն, ֆիզիկական և մտավոր աշխատանքի, քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերություններ և այլն։ Հարկավոր է հաշվի առնել նաև սոցիալիզմի ժամանակ նկատվող հակահասարակական արարքների փաստերը։



Կոմունիզմը հասարակության զարգացման առավել բարձր աստիճան է։ Եվ այդ նոր հասարակության կառուցումը նշանակում է վերափոխումներ կատարել ինչպես էկոնոմիկայում, այնպես էլ մարդկանց փոխհարաբերություններում, աշխարհայացքի, կուլտուրայի, կենցաղի մեջ։ Որպեսզի սովետական յուրաքանչյուր մարդ ճիշտ որոշի իր տեղն ու դերը կոմունիզմի կառուցման գործում, հաջողությամբ լուծի նոր հասարակարգի ստեղծման բարդ խնդիրները, հարկավոր է, որ նա գաղափարապես համոզված լինի ու լիովին տոգորված՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների ճշմարտացիությամբ։

Մարդու գաղափարական համոզվածությունը դրսևորվում է միշտ և ամենուր՝ կուսակցության ընդհանուր գործի, աշխատանքի, կոլեկտիվի, հասարակության, ընտանիքի ոլորտներում ցուցաբերած նրա վարքագծում, կոմունիզմի կառուցման առօրյա մեծ ու փոքր հարցերում։

Սովետական մարդու գաղափարական համոզվածության իրական ապացույցներն են՝ մարքսիզմ-լենինիզմի իմացությունը, անձնուրաց հավատարմությունն այդ ուսմունքին, հավատ դրանց ճշմարտացիության հանդեպ՝ բուրժուական գաղափարախոսության կրողների, բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության թշնամիների դեմ մղվող ամենօրյա պայքարում։ Ուստի, սովետական յուրաքանչյուր քաղաքացի պետք է ճիշտ հասկանա հասարակության առջև ծառացած այսօրվա հարցերը, խորապես գիտակցի, որ դրանց լուծումը պայմանավորված է իրենց անդուլ և գիտականորեն ճիշտ կազմակերպված աշխատանքով։

Սովետական մարդիկ իրենց ողջ գործունեությամբ, հասարակական զարգացման մեջ ունեցած տեղով ու դերով ունակ են ճիշտ ընկալելու գիտական կոմունիզմի գաղափարները։ Բայց դա բնավ չի նշանակում, թե, երբ գաղափարախոսական աշխատանքը վատ է կազմակերպված կոլեկտիվում, ապա գիտական կոմունիզմի գաղափարների՝ սովետական մարդու ընկալունակությունն ինքնին բացառում է բոլոր թերությունները, վրիպումները։

Կոլեկտիվներում վատ կազմակերպված գաղափարախոսական աշխատանքը, պրոպագանդիստական գործունեության ցածր մակարդակը հանգեցնում են վատ արդյունքի և՝ ընդհակառակը։ Ճիշտ ըմբռնելով այս, հանրապետության կուսկազմակերպությունները, մշտապես կատարելագործում են գաղափարադաստիարակչական աշխատանքի ձևերն ու մեթոդները, լուրջ ուշադրություն նվիրում աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։ Այդ գործում նրանք վճռական տեղ են հատկացնում մարքս-լենինյան տեսության խոր յուրացմանը, որի օգնությամբ միայն հնարավոր է մշակել ամբողջական գիտական աշխարհայացք։

Այսօր հանրապետությունն ունի կուսակցական ու կոմերիտական լուսավորության կուռ սիստեմ, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի պահանջների համեմատ և հնարավորություն է ընձեռում հաշվի առնել մարդկանց քաղաքական գիտելիքների և հետաքրքրությունների իրական մակարդակը, սահմանել տեսության յուրացման խիստ հաջորդականություն և հետևողականություն։

Քաղաքական լուսավորության ընթացքում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում արտադրական կոլեկտիվների ու կոմունիստական շինարարության խնդիրների սերտ կապին։ Այս առումով ուշադրության է արժանի Լենինականի գուլպայի ֆաբրիկայի կուսկոմիտեի աշխատանքի փորձը։ Քաղուսուցման մեջ ներգրավված ունկնդիրներն այստեղ ստանում են կոնկրետ առաջադրանքներ, որոնցով պատրաստում են ռեֆերատները։ Գաղափարական հարցերն անմիջականորեն կապվում են տվյալ ձեռնարկության արտադրամասերից որևէ մեկի կամ համասեռ ձեռնարկության աշխատանքի հետ։ Իրենց եւույթներում ունկնդիրները վերլուծում են ընթացիկ գործունեությունը, համատեղ մշակում երաշխավորություններ։ Նման գործնական ուսուցման նոր սիստեմի արդյունքներն ակներև են։

Կուսակցական, կոմերիտական և տնտեսագիտական ուսուցման ժամանակակից մակարդակը թելադրում է ունկնդիրներին՝ ոչ միայն կուտակել որոշակի գիտելիքներ, այլև կարողանալ ճիշտ կողմնորոշվել ժամանակակից քաղաքական բարդ հարցերում։ Հետևաբար, դասախոսների, պրոպագանդիստների,

քաղինֆորմատորների և ագիտատորների մեծաթիվ բանակը չպետք է շրջանցի բարդ հարցերը, որոնք առաջ է քաշում մեր կուսակցությունն ինչպես արտաքին քաղաքական գործունեության ընթացքում, այնպես էլ երկրի ներսում։ Ընդհանրապես, նրանք պարտավոր են ամենօրյա տքնաջան աշխատանքի միջոցով հարստացնել իրենց քաղաքական և պրոֆեսիոնալ գիտելիքները՝ ճշմարտացիորեն, մարքս-լենինյան դիրքերից, համապետական շահերի տեսանկյունից լուսաբանել մեր ապրած բարդ ժամանակաշրջանի հարցերը, տեսական հարուստ լիցք հաղորդել ունկնդիրների մտավոր կյանքին։

Մասսաների կազմակերպման և դաստիարակության գործում վճռական դեր է պատկանում արտադրության ղեկավարներին։ Յուրաքանչյուր ղեկավարի և մասնագետի գործունեության այդ կողմը բացահայտված է «Կոլեկտիվի անդամների գաղափարա-քաղաքական դաստիարակության գործին Չերեպովեցի մետալուրգիական գործարանի ղեկավար և ինժեներա-տեխնիկական աշխատողների մասնակցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Դրա հիման վրա մեր հանրապետության կուսկազմակերպություններն սկսեցին ղեկավար կադրերին լայնորեն ներգրավել պրոպագանդիստական և քաղաքական-մասսայական աշխատանքում։ Այս առումով հետևողականորեն և արդյունավետ գործունեություն է ծավալում կուսակցության Լենինականի քաղկոմը։ Վերը նշված որոշման մեջ շոշափված հարցերը քննարկման առարկա դարձան քաղաքի արդյունաբերական, տրանսպորտային և շինարարական ձեռնարկությունների կուսկազմակերպությունների ժողովներում։ Տեղերում, ղեկավարների և արտադրության հրամանատարների ակտիվ մասնակցությամբ, մշակվեցին կոլեկտիվի անդամների դաստիարակության միջոցառումներ, կիրառվեցին նոր ձևեր ու մեթոդներ։ Մինչև տարվա վերջը կուսքաղկոմի բյուրոյի նիստերում քննարկվել են տրոլեյբուսային վարչության, հացաբուլկեղենի կոմբինատի, նորոգման գործարանի կուսկազմակերպությունների հաշվետվությունները, այնուհետև քաղկոմի պլենումում՝ ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշման կատարման արդյունքները։ Պլենումը կուսկազմակերպություններին տվել է կոնկրետ հանձնարարականներ՝ ղեկավարների և ինժեներա-տեխնիկական աշխատողների գաղափարական-տեսական գիտելիքները հարստացնելու, սոցիալիստական մրցության կազմակերպման գործում վարպետների և մասնագետների դերի բարձրացման վերաբերյալ։

«Աշխատավորների տնտեսագիտական կրթության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի որոշումներից հետո, հանրապետությունում հատուկ ուշադրություն է նվիրվում գիտելիքների պրոպագանդման նոր ձևին՝ տնտեսագիտական կրթությանը։ Կուսակցության պահանջն է՝ գիտական հիմունքներով կատարելագործել ղեկավարման ոճը, բանվորներին ու կոլտնտեսականներին հաղորդել կայուն գիտելիքներ, սովորեցնել նրանց՝ բարձրացնելու արտադրության արդյունավետությունը, տնտեսվարաբար վերաբերվելու տեխնիկային և նյութական ռեսուրսներին։ Այս առումով հետաքրքրական է Աշտարակի շրջանային կուսկազմակերպության փորձը։ Այստեղ ընթացիկ տարվա փետրվարի վերջերին ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը 13 շրջանների համար անցկացրեց հերթական փնջային խորհրդակցություն՝ նվիրված աշխատավորների տնտեսագիտական կրթությանը։

ՀԿԿ Աշտարակի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը մշակել է ուսուցման հեռանկարային պլան այն հաշվով, որպեսզի մինչև հնգամյակի վերջը աշխատավորները լիովին ընդգրկվեն տնտեսագիտական կրթության ցանցում։ Քաղլուսկաբինետին կից ստեղծվել է տնտեսագիտական կրթության կոորդինացման խորհուրդ, որը, բացի պրոպագանդիստների համար կոնսուլտացիաներ և դասախոսություններ կազմակերպելուց, նրանց ապահովում է գրականությամբ, ցուցադրական միջոցներով։

Գիտակցելով տնտեսագիտական կրթության արդյունավետությունը՝ կուսշրջկոմը անցած երկու ուսումնական տարիներին հինգ անգամ քննարկել է ինչպես շրջանում, ամբողջությամբ վերցրած, այնպես էլ առանձին կազմակերպություններում ուսուցման այդ ձևի վիճակը։ Այստեղ ճիշտ են ըմբռնում, որ



աշխատավորների տնտեսագիտական կրթության հաջողությամբ են պայմանավորված ոչ միայն շրջանի ընդհանուր տնտեսական, այլև կոլեկտիվի առանձին անդամների աշխատանքի արդյունքները։

Ուրախալի է, որ հանրապետության կուսկազմակերպությունների մեծամասնությունը խորապես համոզվել է, որ այդ կրթությունը, բացի աշխատավորների որակավորման բարձրացումից, ծառայում է նաև նրանց գաղափարա-քաղաքական գիտակցության աճին, գիտա-տեխնիկական առաջընթացի արագացման համար նրանց մոբիլիզացմանը, սոցիալիստական աշխատանքային դաստիարակության ամրապնդմանը։

Ներկայումս ոչ մեկը չի կասկածում, որ սոցիալիստական արտադրության հետագա զարգացումն անհնարին է առանց ժողովրդի տնտեսագիտական կուլտուրայի աճի։

ՍՄԿԿ XXIV համագումարի նախանշած պատմական խնդիրների լուծման անհրաժեշտ պայմաններից մեկը բարձրորակ մասնագետների պատրաստումն է։ Նրանք զինված են նորագույն գիտելիքներով, ունակ են լայնորեն ծավալելու գիտական հետազոտությունները, ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու դրանց արդյունքները։ ՍՄԿԿ XXIV համագումարը կուսկազմակերպությունների առջև խնդիր է դրել՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությունը կատարելագործել գիտա-տեխնիկական առաջընթացին համապատասխան, բարձրացնել ապագա մասնագետների պատրաստման որակը և նրանց գաղափարա-քաղաքական դաստիարակության մակարդակը։

Ժամանակակից սովետական մարդու կոմունիստական դաստիարակությունը և նրա մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը բարդ ու պատվաբեր խնդիրներ են, որոնցով զբաղվում են բարձրագույն ուսումնական հաստատությունների բոլոր օղակները։ Դրանք արդարացնում են նոր մարդու դաստիարակության դարբնոցի իրենց պատվավոր կոչումը։ Ցավոք, այստեղ ևս ոմանք ոտնահարում են կոմունիստական բարոյականության սկզբունքները, խախտում պետական օրենքները։ Ուստի, ՀԿԿ Երևանի Մյասնիկյանի շրջկոմը վերջին մի քանի տարում ՍՄԿԿ շարքերից հեռացրել է բարձրագույն ուսումնական հաստատությունների 13 դասախոսների, որոնք կատարել են հակաբարոյական, սովետական մարդու, դաստիարակչի անունն արատավորող արարքներ։ Նրանց մի մասը ենթարկվել է քրեական պատասխանատվության։ Բարոյականության տարրական նորմերի խախտումների նկատմամբ ցուցաբերվող անտարբերությունը էապես վնասում է նոր մարդու լինելության վերընթացին։ Այս ոլորտում խոշոր է կուսակցական կազմակերպությունների դերը։

Սովետական մարդու բարոյական կերպարը միաձուլված է գաղափարական համոզվածությանը, անխզելի է նրանից։ Հետևաբար, որտեղ կան բարձր գիտակցականություն, քաղաքական հասունություն, ներքին բարձր կուլտուրա, այնտեղ էլ կա տվյալ բովանդակության դրսևորում։

Այստեղից հետևում է, որ սկզբնական կուսկազմակերպությունները, դաստիարակչական աշխատանքի խելացի կազմակերպմամբ, այդ նպատակով հասարակայնության մոբիլիզացմամբ, կարող են էական արդյունքի հասնել գաղափարախոսական աշխատանքում։ Այս առումով ուսանելի է ՀԿԿ Գուգարքի շրջկոմի գործունեության օրինակը։ Կուսշրջկոմը հասարակական կազմակերպությունների, վարչական մարմինների և շրջանի ակտիվի ջանքերն ուղղել է հանցագործությունների և հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարին, հասել նշանակալի հաջողությունների։ Անցած երկու տարում 17 տնտեսություններից 12-ում չեն արձանագրվել հասարակական կարգի խախտման դեպքեր։

Կուսկազմակերպությունները պետք է հաշվի առնեն, որ սոցմրցության ծավալումը, կոմունիստական շաբաթօրյակների անցկացումը, վետերանների մեծարումը, նախաձեռնությունների և պարտավորությունների ընդունումը, դաստիարակչական պրոցեսի յուրաքանչյուր ձև ու բաղադրամաս գոյություն չունեն առանձին-առանձին։ Այդ հարցերը լուծվում են կոմպլեքսային ձևով։ Եթե մենք ուշադրությունը կենտրոնացնում ենք որևէ ուղղության վրա, ապա

չպետք է անտեսել դաստիարակության կողմնակի մոմենտները, որոնք առկա
են այս կամ այն միջոցառման ժամանակ:
Մի՞թե Երևանի Լենինյան շրջանի խոշոր ձեռնարկություններում աշխա-
տող Ֆեդորովների և Խալիլովների ընտանիքների մեծարման մեջ չկան ինտեր-
նացիոնալ, բարոյական ու աշխատանքային դաստիարակության մոմենտներ:
Կամ Նոյեմբերյանի շրջանում անցկացվող տոհմային շաբաթօրյակները չե՞ն
համարվում կոմունիստական դաստիարակության, աշխատանքի նկատմամբ
կոմունիստական վերաբերմունքի, հայրենասիրական զգացմունքի արտահայ-
տություն իր շրջանի, հանրապետության և ողջ երկրի հանդեպ: Այսպիսի օրի-
նակներ կարելի է շատ բերել:
Քաղկոմ-շրջկոմների պլենումներում և բյուրոների նիստերում քննարկված
հարցերի վերլուծությունը ցույց է տալիս, որ եթե այսօր գոհունակությամբ ենք
նշում այն հատուկ ուշադրությունը, որ որոշ կոլեկտիվներ նվիրում են ինտեր-
նացիոնալ դաստիարակությանը, ապա նույնը չենք կարող ասել կենցաղային,
գեղագիտական և բարոյական դաստիարակության ոլորտների վերաբերյալ:
Նույնիսկ մի շարք շրջաններում անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում աշ-
խատանքային դաստիարակությանը:
Վերջին տարիներին մեզ մոտ երևան եկան աշխատանքային դաստիարա-
կության որոշ նոր ձևեր, որոնք սերտորեն առնչվում են բարոյական, կենցա-
ղային, ինչպես նաև քաղաքական և ինտերնացիոնալ դաստիարակությանը:
Աշխատանքային դաստիարակության խնդիրները ճշտորեն և արդյունա-
վետ են լուծում Կիրովական քաղաքի արդյունաբերական շատ կոլեկտիվներ:
Հատկապես կարելի է նշել «Ավտոմատիկա», «Ավտոգենմաշ», ճշգրիտ հաս-
տոցների գործարանների կուսկազմակերպությունների դրական աշխատանքը:
Քաղաքի շատ ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններ
քաջածանոթ են աշխատողների տրամադրություններին ու փոխհարաբերու-
թյուններին, որը հնարավորություն է ընձեռում ղեկավարել նրանց և ճիշտ
վարել գաղափարա-դաստիարակչական ողջ աշխատանքը:
Այս բնագավառում ծավալված գործունեության արդյունքն այն եղավ,
որ քաղաքի աշխատավորները հաջողությամբ կատարեցին ընթացիկ հնգամյա-
կի անցած երեք տարվա պլանը և դրանից դուրս երկրին տվին 8 մլն ռուբլու
արտադրանք: 1973 թ. դեկտեմբերին 300 բանվորներ կատարեցին իրենց հնգ-
ամյա առաջադրանքը և այժմ աշխատում են 1976 թվականի հաշվին:
Կուսակցական կազմակերպությունները և ոչ մի վայրկյան չպետք է մո-
ռանան, որ կոմունիստական հասարակության հաջող կառուցման կարևորա-
գույն գրավականը նոր մարդու կոմունիստական գաղափարայնությամբ դաս-
տիարակումն է: Սա կյանքի արագ սլացքի ու մեր կուսակցության կենսական
թելադրանքն է, որը չի հանդուրժում ինքնահոս և անտարբերություն գաղափա-
րախոսության և ոչ մի բնագավառում:

# ՄԵՐ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԳՈՐԾՈՆԸ

**Պ. Գ ՍԱՖՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության Սովետականի
շրջկոմի առաջին քարտուղար

Տակավին 1920 թ. մարտի 29-ին կուսակցության IX համագումա-
րին տված Կենտկոմի հաշվետվության մեջ Վ. Ի. Լենինը, խոսելով քաղաքա-
ցիական պատերազմի գոտեմարտերում սովետական իշխանության հաղթա-
նակն ապահովող գործոնների մասին, նշում էր. «Եթե խորհենք այն մասին,
թե ինչն է, վերջ ի վերջո, այն բանի ամենախոր հիմքը կազմում, որ կատար-
վեց այդպիսի պատմական հրաշք, որ թուլացած, ուժասպառ, հետամնաց եր-
կիրը հաղթեց աշխարհի ուժեղագույն երկրներին, ապա մենք կտեսնենք, որ դա
կենտրոնացումն է, կարգապահությունը...» (Երկեր, հ. 30, էջ 570): Առաջնորդը
կարգապահությունը համարում էր կոմունիստական կուսակցության և սովե-
տական ժողովրդի հզոր զենքը՝ երկրի առջև դրված պատմական խնդիրները
լուծելու գործում: Աշխատանքային և պետական բարձր կարգապահությունը,
ընդգծում էր Վ. Ի. Լենինը, դա գիտակցական, ընկերական կարգապահություն
է՝ հիմնված մասսաների ինքնուրույնության ու նախաձեռնության վրա՝ հասա-
րակական կյանքի բոլոր ոլորտներում:
Վ. Ի. Լենինը բազմիցս պարզաբանել է, որ միայն «համաժողովրդական
կազմակերպվածության ու կարգապահության» հիման վրա կարելի է զարգաց-
նել ժողտնտեսության բոլոր բնագավառները, հասնել երկրի տնտեսական
առաջընթացի բարձր աստիճանի: Սոցիալիստական կարգապահությունն այսօր
հանրային հարստության բազմապատկման, սովետական մարդկանց նյութա-
կան բարեկեցության և կուլտուրական մակարդակի աճի գրավականն է: Այս-
տեղից հասկանալի է այն առանձնահատուկ ուշադրությունը, որը նվիրեց կու-
սակցության XXIV համագումարը կուսակցական ու պետական կարգապահու-
թյան համակողմանի ամրապնդմանն ու կատարելագործմանը: Համագումարը
պահանջեց կուսակցական, սովետական բոլոր կազմակերպություններից ու
մարմիններից վճռականորեն բարելավել կուսակցական ու պետական
կարգապահությունը՝ որպես ժողտնտեսության հետագա զարգացման, հնգամ-
յակի դիրեկտիվների կատարման վճռական գործոն: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր
քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, հանդես գալով Մոսկվայի Բաումանյան ընտրական
օկրուգի ընտրողների ժողովում, որպես հնգամյակի դիրեկտիվների կատա-
րումն ապահովող անհրաժեշտ ու պարտադիր պայման, նշեց. «Դրա ուղին բո-
լոր ուժերի մոբիլիզացումն է, տնտեսության ղեկավարման բարելավումը,
բարձր արտադրողական աշխատանքը, կարգապահության և կազմակերպվա-
ծության բարձրացումը» (Ամեն ինչ ժողովրդի, սովետական մարդու բարօրու-
թյան համար, «Հայաստան» հրատ., 1974, էջ 8):
ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին համապատասխան՝ կուսակցա-
կան, պետական կարգապահության ամրապնդման ասպարեզում որոշ աշխա-
տանք են կատարել նաև ՀԿԿ Երևանի Սովետականի շրջանային կոմիտեն և
սկզբնական կուսկազմակերպությունները: Շրջանի կուսկազմակերպություննե-
րը և արտադրական կոլեկտիվները, հանդես բերելով բարձր կազմակերպվա-
ծություն ու կարգապահություն, հաջողությամբ ավարտեցին իններորդ հնգամ-

յակի երրորդ՝ վճռական տարին: Արտադրական բարձր ցուցանիշների համար շրջանն արժանացավ ՀԿԿ Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ դրոշին, իսկ համաշինարարական № 3 տրեստը արդեն չորս եռամսյակ է, ինչ իր ձեռքում է պահում ՍՍՀՄ արդյունաբերական շինարարության մինիստրության փոխանցիկ կարմիր դրոշը: Շրջանի արդյունաբերությունը ընթացիկ տարվա երրորդ եռամսյակում նվաճեց կուսակցության Երևանի քաղկոմի և քաղսովետի գործկոմի փոխանցիկ դրոշը: Այսօր շրջանում չկա որևէ արդյունաբերական ձեռնարկություն, շինարարական կազմակերպություն, հիմնարկություն, գիտահետազոտական հաստատություն, որը չկատարի իր առջև դրված խնդիրները: Այս հաջողությունները մեծ չափով արդյունք են նաև կուսակցական, պետական կարգապահության ամրապնդման:

Կուսակցության շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները անընդհատ կատարելագործում են կուսակցական-պետական կարգապահության ամրապնդման ձևերն ու մեթոդները, ընդօրինակում մեր հանրապետության և երկրի կուսկոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի փորձը: Այս կապակցությամբ մեզ համար, Վ. Ի. Լենինի աշխատություններից զատ, անսպառ աղբյուր են նաև ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները և կուսակցության ու կառավարության ղեկավարների ճառերն ու ելույթները:

Շրջանի բոլոր կոլեկտիվներում սոցիալիստական կարգապահության ամրապնդման աշխատանքը շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ծավալում են երկու ուղղությամբ: Նախ, քաղաքական-բացատրական լայն գործունեությամբ աշխատավորական զանգվածներին գիտակցական կարգապահությամբ և ինքնակարգապահությամբ դաստիարակելով և ապա (իհարկե, ոչ հիմնական)՝ հարկադրական կարգապահությունն ուժեղացնելու միջոցով: Հասկանալի է՝ այս երկու ձևերը փոխկապված ու պայմանավորում են միմյանց: Գործի հաջողությունը դրանց ճիշտ և հետևողական կիրառման ու զուգակցման մեջ է:

Ինչի՞ց սկսեցինք: Նախ, քաղաքական, դաստիարակչական աշխատանքի մասսայական բազմաթիվ ձևերի ու մեթոդների հետևողական կիրառումից. աշխատավորական ամենալայն զանգվածներին զինեցինք այն համոզմամբ, որ կարգապահության և ինքնակարգապահության ամրապնդման համար մղվող պայքարում վճռական դերը պատկանում է հենց իրենց: Դրանով իսկ որոշակիորեն բարձրացրինք բանվոր-ծառայողների կոլեկտիվ և անհատական պատասխանատվությունն իրենց աշխատանքի արդյունքների համար:

Շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ հատուկ ուշադրություն ենք նվիրում ինչպես սեփական, այնպես և կուսակցական, սովետական վերադաս մարմինների որոշումների, սովետական պետական օրենքների կատարման վերահսկողության ուժեղացմանը: Վերահսկողությունը և որոշումների կատարման ստուգումը պետական կարգապահության ամրապնդման հիմքն են, նշում էր Վ. Ի. Լենինը: Ահա թե ինչու, ՍՍՀՄ պարենավորման ժողկոմ Ա. Ցյուրուպային գրած նամակում նա պահանջում էր՝ ժամանակ գտնել անձամբ ամիսը մեկ անգամ պարտադիր կերպով ստուգելու որոշումների և կարգադրությունների կատարման ընթացքը:

Ինչպե՞ս ենք իրականացնում որոշումների կատարման վերահսկողությունը: Շրջկոմի բաժինները շրջկոմի բյուրոյին պարբերաբար ինֆորմացիա են տալիս սեփական և վերադաս կուսակցական մարմինների որոշումների կատարման ընթացքի վերաբերյալ: Ընդ որում, եթե տվյալ որոշումը չի կատարվել, այն կրկին մնում է բյուրոյի հսկողության տակ: Սկզբնական կուսկազմակերպությունները և հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները ևս ժամանակին շրջանային կոմիտե են ներկայացնում որոշումների կատարման մասին ինֆորմացիաներ: Մեզ մոտ սովորույթ է դարձել ինչպես շրջկոմի պլենումներում, այնպես էլ կուսժողովներում պարտադիր կերպով հաշիվ տալ նախկին որոշումների կատարման ընթացքի ու արդյունքների վերաբերյալ:

Կարգապահության ամրապնդմանը մեծապես նպաստում են շրջկոմի ամենամյա պարտադիր հաշվետվությունները սկզբնական կուսկազմակեր-



պությունների: Ուշադրավ է վերադաս և ստորադաս կուսակցական մարմին-
ների և կազմակերպությունների փոխինֆորմացիաների կարգը: Ամիսը մեկ—
երկու անգամ շրջկոմը կուսակցական, սովետական ակտիվին ծանոթացնում է
կուսակցական ու սովետական շրջանային և վերադաս մարմինների կարևոր
որոշումներին, դրանց կատարման ընթացքին ու արդյունքներին:

Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդման գործում
շրջկոմը կարևորում է քննադատության ու ինքնաքննադատության ծավալումը
բոլոր կուսկազմակերպություններում և կոլեկտիվներում: Կոմունիստներին
հայտնի է քննադատության և ինքնաքննադատության՝ որպես սոցիալիստա-
կան հասարակության զարգացման շարժիչ ուժի լենինյան գնահատականը:
Դրանք նպաստում են աշխատավորական զանգվածների հասարակական, քա-
ղաքական, արտադրական ակտիվության զարգացմանը, բարձրացնում կադրե-
րի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Սովետականի
կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը 1973 թ. ստացել են յոթ հազար դիմում-
նամակ, 1972 թ. համեմատությամբ 2.500-ով ավելի: Հատուկ հանձնաժողովն
ուսումնասիրեց դրանց արծարծած հարցերը: Պարզեցինք, որ դիմում-նամակ-
ների ավելացման հիմնական շարժառիթներից մեկը շրջանի կուսկազմակեր-
պություններում և կոլեկտիվներում քննադատության և ինքնաքննադատության
ցածր մակարդակն է, երբեմն էլ՝ բացակայությունը: Աշխատավորների բարձ-
րացրած հարցերը չեն լուծվում ժամանակին, նրանք ստիպված դիմում են
վերադաս մարմիններին: Շրջանային կոմիտեն կիրառում է կուսկազ-
մակերպություններում քննադատությունն ու ինքնաքննադատությունն ակտի-
վացնելու զանազան ձևեր ու մեթոդներ: Նախ՝ բյուրոյի նիստերում հաճախ
քննարկում ենք քննադատության և ինքնաքննադատության վիճակը շրջանի
այս կամ այն կուսկազմակերպությունում: Ապա՝ շրջկոմին կից գործող հատուկ
հանձնաժողովը գործնականորեն հետևում է շրջկոմի պլենումներում և կուս-
ժողովներում բարձրացված հարցերի, քննադատական դիտողությունների ու
առաջարկությունների կատարման ընթացքին և պարբերաբար ինֆորմացիա
տալիս շրջկոմի բյուրոյին:

Կուսակցական ու պետական կարգապահության ամրապնդումը Վ. Ի. Լե-
նինն առաջին հերթին կապում էր կադրերի ճիշտ ընտրության, վստահության և
նրանց նկատմամբ ամենօրյա վերահսկողության իրականացման հետ: Վերջին
տարիներին լենինյան այս սկզբունքը մեզ մոտ որոշ չափով խաթարվել էր:
Իրականում, մի կողմից, կուսակցական, սովետական շրջանային կոմիտեները
և հանրապետական գերատեսչական մարմինները տարիներ ի վեր չեն լուծել
կադրերին լիովին վստահելու, բայց միաժամանակ հանձնարարած գործի հա-
մար նրանց պատասխանատվությունը բարձրացնելու վերաբերյալ կուսակցու-
թյան առաջադրած խնդիրները: Մյուս կողմից, սկզբնական կուսկազմակերպու-
թյունները վատ են իրականացրել ադմինիստրացիայի, մասնավորապես կադ-
րերի նկատմամբ վերահսկողության իրենց ֆունկցիան, դրանով իսկ պայման-
ներ են ստեղծել, որ որոշ կադրեր, կոլեկտիվների ղեկավարներ ընդհանրապես
դուրս մնան որևէ հսկողությունից: Այս ամենի հետևանքով, ժամանակի ըն-
թացքում, կադրերի մի մասը թուլացրել էր պատասխանատվության զգացումը
հանձնարարված գործի հանդեպ: Նրանք կորցրել էին իրենց արարքները սկզբ-
բունքորեն գնահատելու կարողությունը: Հետևանքը՝ շրջանի շատ հիմնարկ-
ձեռնարկություններում պետական օրենքների և բարոյական նորմերի հաճա-
խակի խախտումներն ու անօրինականություններն էին: № 5 կարի ֆաբրիկայի
դիրեկտոր Վ. Կարապետյանը, օգտվելով կուսակցական և գերատեսչական վե-
րահսկողության բացակայությունից, առանց իր արարքի համար հաշիվ տալու,
մոտ 2.000 մետր թանկարժեք կտորը բաժանել էր ձեռնարկության բանվոր-
ծառայողներին, իսկ արդյունքը ցույց տվել որպես պլանի կատարում: Դեռ
ավելին, մինչև կուսակցական խիստ պատիժ ստանալը և աշխատանքից վտար-
վելը Վ. Կարապետյանը չէր կարողանում ճիշտ, կուսակցական գնահատական
տալ իր արարքին, հայտարարելով, թե իր արածը անմեղ բան է:

նվիրում աշխատավորների և բնակչության իրավական դաստիարակության հարցերին։ Կուսշրջկոմը մշակել է աշխատավորների իրավական դաստիարակության երկամյա միջոցառումների պլան և այն աստիճանաբար իրականացնում է։ Շրջկոմին առընթեր, ակտիվի համար, և թաղային խորհուրդներին առընթեր՝ բնակչության համար ստեղծվել և գործում են իրավաբանական համալսարաններ։ Շրջանի ձեռնարկություններում (հատկապես թեթև և սննդի արդյունաբերության) կազմակերպվում են «Մարդը և օրենքը» թեմայով ցիկլային դասախոսություններ և այլն։

Սոցիալիստական կարգապահության ամրապնդման նպատակով շրջկոմի կիրառած մյուս մեթոդը (իհարկե, ոչ հիմնական) պատժի և հարկադրական կարգապահությունն ամրապնդելու մեթոդն է։ Վ. Ի. Լենինը Սովետական իշխանության հերթական խնդիրները աշխատության մեջ, խոսելով սպեկուլյացիայի, կաշառակերության, անձնական շահ հետապնդելու և գայթակղության այլ դրսևորումների դեմ պայքարն ուժեղացնելու մասին, գրում է, որ այդ տարրերի դեմ չի կարելի պայքարել միայն պրոպագանդայով ու ագիտացիայով, պայքարը պետք է մղել նաև հարկադրանքով։ Անցած երկու տարում աշխատանքից ազատվել կամ տուժարկվել են բազմաթիվ հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական ղեկավարներ, գիտա-ուսումնական հաստատությունների դիրեկտորներ, կուսկազմակերպությունների քարտուղարներ և այլն։ Իհարկե, շրջկոմը կադրերին պատժելու գիծ չի վարում, սակայն չի անտեսում նաև մարդկանց պատժելու մեթոդը, եթե դրա հարկը կա։ Աշխատանքից, զբաղեցրած պաշտոնից ազատվում են նրանք, ովքեր տվյալ պաշտոնում այլևս չեն արդարացնում և չեն լուծում իրենց առջև ծառացած խնդիրները։ Այնպիսի վիճակ էր ստեղծվել, որ որոշ կադրեր, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ տարիներ շարունակ օրինականացնում էին ինչպես իրենց, այնպես էլ իրենց ենթակաների կատարած սոցիալիստական սեփականության չարաշահումները և այլ կարգի անօրինականություններ։ Ոմանք կորցրել էին զգոնությունը, երևույթներն զգաստ գնահատելու կարողությունը։

Կուսակցական, պետական կարգապահության ամրապնդման նպատակով շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած աշխատանքը գործի սկիզբն է, առաջին քայլերը։ Դեռևս մեծ ջանքեր պահանջող, չլուծված շատ հարցեր կան։ Ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են ակտիվորեն պայքարում կուսակցական, պետական կարգապահության ամրապնդման համար, շատ են պասսիվ կուսանդամները։ Կոլեկտիվ կարգապահության, կոլեկտիվ պատասխանատվության բարձրացման համար շատ քիչ աշխատանք է կատարվել։ Լիովին չի հաղթահարված աշխատավորների, բնակչության զգալի մասի պասսիվ դժգոհությունը, որոշ դեպքերում, նույնիսկ անտարբերությունը հասարակական կյանքում (առևտուր, կենցաղսպասարկում) նկատվող անօրինականությունների նկատմամբ։ Որոշ կուսկազմակերպություններ գործուն միջոցների չեն դիմում՝ վերը նշված երևույթների դեմ աշխատավորներին համաժողովրդական պայքարի հանելու համար։ Իսկ վերջինս նրանց քաղաքացիական պարտքի արտահայտման ակտիվ ձև է։ Մեր աշխատավորական լայն զանգվածները պետք է հստակ գիտակցեն, որ արտադրության մեջ, հասարակական վայրերում կարգ ու կանոնի հաստատումը, սոցիալիստական համակեցության նորմերի պահպանումը ո՛չ միայն վարչական մարմինների պարտականությունն է, այլ նաև՝ իրենց։



# ՄԻՋՏՆՏԵՍԱՅԻՆ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԿՈՈՊԵՐԱՑԻԱՅԻ ԴԵՐԸ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Ա. Գ. ՄԱՐԴՈՅԱՆ**
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության կոլտնտեսությունների և սովխոզների գործերի գլխավոր վարչության պետ

Մեր երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման հարցը գտնվում է ՍՄԿԿ ուշադրության կենտրոնում, քանի որ այն կարևոր դեր է կատարում բնակչությանը կենսամթերքով, թեթև և սննդի արդյունաբերությանը՝ հումքով ապահովելու գործում։ Այժմ հատկապես մեծ է միջտնտեսային արտադրական կոոպերացիայի, միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների (կազմակերպությունների) դերը, քանի որ, ինչպես վկայում են արդյունքները, դրանք նպաստավոր պայմաններ են ստեղծում տեխնիկայի, կապիտալ ներդրումների և աշխատանքային ռեսուրսների արդյունավետ օգտագործման, ինդուստրիալ մեթոդների լայն արմատավորման համար։

Հանրային գյուղատնտեսության հետևողական վերելքի և ինտենսիվացման գործում կոմունիստական կուսակցությունը ղեկավարվում է լենինյան ագրարային քաղաքականության սկզբունքներով, որի մշակման և կենսագործման համար առանձնահատուկ տեղ է գրավում ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը։ Այդ քաղաքականությունը հետագա զարգացումն ստացավ Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումներում, կուսակցության XXIII և XXIV համագումարների փաստաթղթերում։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1973 թ.) պլենումում և Ալմա-Աթայում խոպանի յուրացման 20-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառերում շեշտվեց միջտնտեսային մասնագիտացման իրականացման անհրաժեշտությունը՝ արտադրության կենտրոնացման և կոոպերացման բազայի վրա։

Խոսելով կուսակցության ագրարային քաղաքականության մասին, Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ, ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում ինդուստրիալ հիմքի վրա։ Արտադրաուժերի մեջ կատարվող այս դրական տեղաշարժն իր հերթին պահանջում է արտադրահարաբերությունների կատարելագործում, հանրայնացման պրոցեսների ուժեղացում, աշխատանքի բաժանում... Արտադրության հետագա մասնագիտացումը և կենտրոնացումը, միջտնտեսային կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական, արմատական հարցերն են դառնում»։

Կենսագործելով կուսակցության XXIII և XXIV համագումարների և Կենտ-

արտադրական բազմաթիվ օբյեկտներ, այդ թվում միջկոլտնտեսային թռչնաբուծական և խոզաբուծական ֆաբրիկաներ։ Իր գործունեության ընթացքում կազմակերպությունը ստացել է 711,6 հազար ռուբլու օգուտ, որը 5,3 անգամ գերազանցում է դրա ստեղծմանը հատկացված գումարը։

Շահումյանի միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկան գործարկվել է 1965 թ.՝ 375 հազար ռուբլի փայատիրական գումարով։ Ներկայումս հիմնական միջոցների արժեքը 815 հազար ռուբլի է։ Ֆաբրիկան 1973 թ. արտադրել է 833 ցենտներ թռչնի միս, 2,1 մլն հատ ձու, կոլտնտեսություններին և բնակչությանը վաճառել 211,2 հազար ճուտ։ Մեկ ածան հավի ձվատվությունը 131 հատ է, հանրապետության կոլտնտեսությունների 102-ի փոխարեն։ Մեկ ցենտներ թռչնի մսի ինքնարժեքը միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկայում կազմել է 247 ռ. 22 կ., իսկ Շահումյանի շրջանի կոլտնտեսություններում՝ 273 ռ. 15 կ.։

Ֆաբրիկայում զգալիորեն ցածր է ձվի ինքնարժեքը։ Նվազել են նաև մեկ միավոր արտադրանքի արտադրության վրա կատարվող ծախսումները։ Այսպես, եթե միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկայում մեկ ցենտներ թռչնի մսի արտադրության վրա ծախսվել է 6,6 ցենտներ կերամիավոր, իսկ 1.000 հատ ձվի արտադրության վրա՝ 5,3 ցենտներ, ապա կոլտնտեսություններում համապատասխանաբար ծախսվել է՝ 8,2 և 8 ցենտներ կերամիավոր։ Եթե մեկ ցենտներ թռչնի մսի արտադրության վրա ֆաբրիկայում ծախսվել է 18,7 մարդ-ժամ, իսկ 1.000 հատ ձվի արտադրության վրա՝ 14,8, ապա կոլտնտեսություններում համապատասխանաբար՝ 91,3 և 48,3 մարդ-ժամ։

Տարեցտարի ընդլայնվում են միջկոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկայի արտադրակարողությունները, ավելանում են մսի և ձվի արտադրությունն ու իրացումը։ 1974 թ. վերջին ֆաբրիկան կունենա ավելի քան 50 հազար ածան հավ։ Սկսած 1975 թ., այստեղ տարեկան կարտադրվի 8—10 մլն հատ ձու, 1.700—2.000 ցենտներ թռչնի միս։

Այս շրջանն ունի նաև միջկոլտնտեսային խոզաբուծական ֆաբրիկա, որտեղ 1974 թ. հունվարի 1-ի դրությամբ խոզերի գլխաքանակը հասել է 2.600-ի։ 1973 թ. արտադրվել է 2.425 ցենտներ խոզի միս, մեկ հիմնական մայր խոզի հաշվով՝ 11 ցենտներ, որը հանրապետության կոլտնտեսություններում արտադրվածի միջին մակարդակը գերազանցում է 1,6 անգամ։ Մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը միջկոլտնտեսային ֆաբրիկայում կազմել է 143 ռ. 88 կ., կերի ծախսը՝ 7,3 ցենտներ կերամիավոր, աշխատանքային ուղղակի ծախսումները՝ 23,8 մարդ-ժամ, հանրապետության կոլտնտեսություններում համապատասխանաբար՝ 191 ռ. 17 կ., 9,5 ցենտներ կերամիավոր, 67,1 մարդ-ժամ։

1974 թ. հունվարի մեկի դրությամբ թռչնաբուծական և խոզաբուծական միջկոլտնտեսային ֆաբրիկաները թողարկել են Շահումյանի շրջանի կոլտնտեսային սեկտորում արտադրված մսի 40, ձվի՝ 46 տոկոսը։ Դրանք ոչ միայն նպաստել են մսի և ձվի արտադրության ավելացմանը, այլև կոլտնտեսություններին ազատել փոքր, ոչ շահավետ ֆերմաների հոգսերից, դրանով իսկ հնարավորություն ընձեռել ուշադրությունը կենտրոնացնել գլխավորապես կաթնային անասնապահության վրա, որը դրական արդյունք է տվել։

Շահումյանի շրջանի կոլտնտեսությունները 100 հեկտար պիտանի հողատարածության հաշվով ստացել են 1.154 ցենտներ կաթ, 180 ցենտներ միս, հանրապետության միջին ցուցանիշները գերազանցելով համապատասխանաբար՝ 6,3 և 4,2 անգամ։ 1970—1973 թթ. Շահումյանի շրջանում մսի արտադրությունն ավելացել է 44 տոկոսով, իսկ հանրապետությունում՝ 14։

Չնայած այս հաջողություններին, հանրապետությունում միջտնտեսային մասնագիտացման բնագավառում վիճակը դեռևս անբավարար է։ Քաղաքների մոտակայքում, ինչպես և շրջկենտրոններում չեն ստեղծվել կաթնապրանքային մասնագիտացված տնտեսություններ, խոշոր եղջերավոր անասունների բտման, տոհմային էգ մատղաշների աճեցման, թռչնաբուծական արտադրանքի վերամշակման, համակցված կերի արտադրության, գյուղատնտեսական տեխ-



նիկայի օգտագործման, շինարարական և այլ բնույթի միջտնտեսային ձեռնարկություններ։

Վերջին տարիներին կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացել
է խոզաբուծական ֆերմաների քանակը, սակայն մեկ ֆերմայի հաշվով պակասել է խոզերի գլխաքանակը, կրճատվել է խոզի մսի արտադրությունը, նվազել շահութաբերությունը։ 1970 թ. խոզաբուծությամբ զբաղվել է 207 տնտեսություն, կոլտնտեսային յուրաքանչյուր ֆերմայում եղել է 23, սովխոզներում՝
34 խոզամայր, 1973 թ. համապատասխանաբար՝ 289 տնտեսություն, 21 և 28
խոզամայր։ Խոզի մսի արտադրությունը մեկ խոզաբուծական ֆերմայի հաշվով
1970 թ. կոլտնտեսություններում կազմել է 174, իսկ սովխոզներում՝ 227 ցենտներ, 1973 թ. համապատասխանաբար՝ 168 և 173 ցենտներ։ 1970 թ. մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը կոլտնտեսություններում կազմել է 180, սովխոզներում՝ 186 ռուբլի, 1973 թ. համապատասխանաբար՝ 191 և 205 ռուբլի։

Տվյալները վկայում են, որ կոլտնտեսությունների և սովխոզների թռչնաբուծական և խոզաբուծական փոքր ֆերմաներն իրենց չեն արդարացնում։

Նույնն է վիճակը նաև տնտեսությունների մյուս ճյուղերում։ Անասունների
բտման աշխատանքները ըստ ամենայնի չկազմակերպելու հետևանքով հան-
րապետության կոլտնտեսությունների և սովխոզների կողմից պետությանը
հանձնած և վաճառած տավարի մսի 21,4, ոչխարի մսի՝ 24,7 տոկոսը եղել է
միջակից ցածր և հյուծված, որի իրացումից տնտեսությունները կրել են
3,5 մլն ռուբլու վնաս։ Հաշվառման և վերահսկողության անբավարար դրվածքի
պատճառով՝ երինջների մի մասը ծնից հետո ժամանակին չի փոխանցվում մայ-
րական հոտը։ Խնամքի, կերակրման և պահպանման վատ պայմանների հետե-
վանքով դրանք կորցնում են շատ կաթ և միս տալու լավագույն հատկություն-
ները։ Անասնաբուծությունը դառնում է վնասաբեր ճյուղ։

Գյուղատնտեսական արտադրության վնասաբերության պատճառները վե-
րացնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու և ինտենսիվ զարգա-
ցումն ապահովելու համար համարձակորեն պետք է զարգացնել միջտնտեսա-
յին արտադրական կոոպերացիան։ Կոլտնտեսությունների և սովխոզների փոքր,
վնասաբեր ֆերմաների փոխարեն, դրանց դրամական, նյութա-տեխնիկական
միջոցները և աշխատառեսուրսները կոոպերացնելու հիման վրա հարկավոր է
հիմնել միջկոլտնտեսային, պետական-կոլտնտեսային խոշոր ձեռնարկություն-
ներ (կազմակերպություններ)։ Երբ միավորվում են մի քանի տնտեսություն-
ների ռեսուրսները, հնարավորություն է ընձեռվում համատեղ ջանքերով ստեղ-
ծելու ինդուստրիալ տիպի խոշոր և մասնագիտացված ձեռնարկություններ,
ընդլայնելու արտադրությունը, արմատավորելու արդյունաբերության տեխնո-
լոգիան, իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը, բարձրացնելու արտադրության
շահութաբերությունը և այլն։ Ահա թե ինչու ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիս-
տրների սովետը 1974 թ. օգոստոսին որոշում ընդունեցին միջկոլտնտեսային
և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների կազմակերպման և զարգաց-
ման մասին։ Համաձայն այդ որոշման, 1974—1978 թթ. հանրապետությունում
ստեղծվելու են միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային 80 ձեռնարկու-
թյուններ, այդ թվում տոհմային երինջների աճեցման 26, խոշոր եղջերավոր
անասունների մատղաշի աճեցման և բտման՝ 19, խոզերի բտման՝ 2, թռչնա-
բուծական՝ 4, կաթի արտադրության՝ 5, մեղվաբուծական՝ 9, փակ գրունտի
բանջարեղենի արտադրության՝ 2, պտղի վերամշակման՝ 1, կերի արտադրու-
թյան՝ 8, շինարարական՝ 4 ձեռնարկություններ։

Տոհմային երինջների աճեցման ձեռնարկություններում տարեկան խնամվելու է մոտավորապես 52 հազար գլուխ տոհմային երինջ։ Դրանց 50 տոկոսը, սահմանված ժամկետը լրանալուց հետո ետ է վերադարձվելու փայատեր տնտեսություններին՝ ապրանքային հոտը համալրելու համար։

Խոշոր եղջերավոր անասունների մատղաշի աճեցման և բտման շնորհիվ, կաթի արտադրության ձեռնարկությունների գործարկմամբ, մսի արտադրությունը հանրապետությունում կավելանա 10, կաթինը՝ 4,8 տոկոսով։ Կերի արտադրության ձեռնարկությունները տարեկան կթողարկեն 15 հազար տոննա

խոտայլուր, 60 հազար տոննա համակցված կեր։ Շինկազմակերպությունները տնտեսություններում տարեկան կատարելու են 5,5 մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ և այլն։

Արտադրության մասնագիտացման և կենտրոնացման հիման վրա կոլտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների ստեղծմամբ հանրապետության գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ՝ զգալիորեն բարելավվում են անասնապահության որակական ցուցանիշները, բարձրանում է արտադրության արդյունավետությունը, ավելանում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Շրջանային կուսակցական, սովետական կազմակերպությունները և գյուղատնտեսական օրգանները պետք է հետևողական աշխատանք տանեն միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների կազմակերպման և զարգացման սկզբունքները ճշտությամբ իրականացնելու նպատակով։

Արտադրության կազմակերպման ձևերի կատարելագործման հետ անհրաժեշտ է կատարելագործել նաև գյուղատնտեսության կառավարման ձևերը։ Կառավարման ժամանակակից կառուցվածքը թերություններ ունի, դրա տարբեր օղակներ մոտ չեն կանգնած գյուղատնտեսական արտադրությանը, շահագրգռված չեն արդյունավետության բարձրացմամբ։ Գյուղատնտեսական տարբեր գերատեսչությունները սերտորեն փոխկապված չեն, հստակ չեն սահմանված նրանց գործունեության ոլորտները։ Անհրաժեշտ է ստեղծել կառավարման այնպիսի սիստեմ, որը զերծ լինի նշված թերություններից, բավարարի գյուղատնտեսությանն առաջադրվող պահանջները։

Կոլտնտեսականների համամիութենական III համագումարի որոշմամբ միութենական բոլոր հանրապետություններում, մարզերում, երկրամասերում և շրջաններում ստեղծվեցին կոլտնտեսությունների խորհուրդներ, որոնք կոչված են ամփոփելու և տարածելու առաջավոր փորձը, նպաստելու միջտնտեսային կապերի հետագա զարգացմանը, երաշխավորելու տնտեսության վարման ժամանակակից, առավել կատարելագործված ձևեր ու մեթոդներ։ Անհրաժեշտ է նշել, որ այդ խորհուրդները սկզբնական շրջանում որոշ դրական դեր խաղացին։ Սակայն, ինչպես ցույց տվեց պրակտիկան, դրանց ազդեցությունն արտադրության զարգացման վրա եղել է անբավարար, նրանք ըստ ամենայնի չեն ղեկավարել կոլտնտեսություններն ու միջտնտեսային կազմակերպությունները։ Ելնելով դրանից, պատահական չէ, որ Մոլդավիայի կոլտնտեսություններն ու միջտնտեսային կազմակերպությունները 1973 թ. իրենց հաշվետու-ընտրական ժողովներում ցանկություն հայտնեցին կոլտնտեսությունների խորհուրդներին տալ ավելի մեծ իրավունքներ։ Մոլդավիայի կոլտնտեսականների II համագումարը որոշեց կոլտնտեսությունների խորհուրդներին վերապահել կարգադրելու իրավունք, նրանց վրա դնել մատակարարման, մթերումների, ֆինանսական, պլանավորման և այլ ֆունկցիաներ։ ՍՄԿԿ Կենտկոմը հավանություն տվեց Մոլդավիայի գյուղատնտեսության աշխատավորների այդ նախաձեռնությանը։

Այժմ Մոլդավիայի կոլտնտեսությունների խորհուրդը միակ օրգանն է, որ ղեկավարում է կոլտնտեսությունների միջտնտեսային կազմակերպությունների ողջ գործունեությունը, որոշում է գյուղատնտեսական արտադրության զարգացման արմատական հարցերը։

Մեր հանրապետությունում ևս կոլտնտեսությունների խորհուրդներին պետք է լայն իրավունքներ-լիազորություններ տալ և հանձնարարել կոլտնտեսությունների ու միջտնտեսային ձեռնարկությունների վարման ողջ գործունեությունը։

Կասկած չկա, որ միջտնտեսային արտադրական կոոպերացիայի զարգացումը և նրա կազմակերպման ձևերի կատարելագործումը կնպաստեն գյուղում կոմունիստական շինարարության ծրագրի հաջող կենսագործմանը։

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԾԱԽՍԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

**Թ. Դ. ՉԱԼՅԱՆ**
Դոցենտ, տնտեսական գիտությունների թեկնածու

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ կոմունիզմի կառուցումը հնարավոր չէ առանց գիտության, տեխնիկայի և կուլտուրայի բարձրագույն նվաճումների, առանց ժողովրդական կրթության։ Առաջնորդվելով լենինյան ցուցումով, կուսակցությունն ու կառավարությունն առանձնահատուկ հոգատարություն են ցուցաբերում բնակչության ընդհանուր և պրոֆեսիոնալ կրթամակարդակի բարելավման հանդեպ։ ՍՄԿԿ XXIV համագումարը երկրի տնտեսական զարգացման գլխավոր ուղղության՝ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործում վճռական դերը հատկացրեց կրթացանցի զարգացմանը, բարձրորակ կադրերի պատրաստմանը։ Համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ կոմունիզմի կառուցումն անկարելի է առանց մարդու բազմակողմանի զարգացման. «Առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, հասարակական գիտակցության, ներքին հասունության բարձր մակարդակի կոմունիզմը անհնարին է, ինչպես որ այն անհնարին է առանց նյութա-տեխնիկական համապատասխան բազայի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 110)։ Համագումարը մշակեց իններորդ հնգամյակում ժողկրթության հետագա զարգացման ու կատարելագործման ուղիները, կոնկրետ խնդիրներ դրեց ժողկրթության ցանցի աշխատողների առջև։ Դրանք են՝ ավարտել երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության անցումը, ժողտնտեսությանը տալ ավելի քան 9 մլն որակյալ բանվորական կադրեր, պատրաստել բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մոտ 9 մլն մասնագետներ՝ ուշադրությունը բևեռելով գիտության և տեխնիկայի նոր ու հեռանկարային ճյուղին, բարձրացնել աշխատավորների կրթության և որակավորման մակարդակը։

Կուսակցության կանխագծումները հաջողությամբ կենսագործվում են։ Այժմ ժողտնտեսության աշխատողների ավելի քան 74 տոկոսն ունի բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն, 19 մլն մասնագետ՝ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն։ Միայն 1973 թ. միջնակարգ կրթություն են ստացել 3,7 մլն պատանիներ ու աղջիկներ, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններից ժողտնտեսության տարբեր ճյուղեր են գործուղվել ավելի քան 1,8 մլն մասնագետներ (700 հազարը բարձրագույն կրթությամբ), պրոֆտեխուսումնարաններից՝ 1,8 մլն բանվորական որակյալ կադրեր։ Արտադրությունում նոր մասնագիտություններ են սովորել և իրենց որակավորումը բարձրացրել ավելի քան 2 մլն աշխատողներ։

Ժողկրթության զարգացմանն ու կատարելագործմանը նպաստեցին 1973 թ. հուլիսին ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիայում

քննարկված «ՍՍՀՄ ժողովրդական կրթության վիճակի ու ընդհանուր միջնակարգ, պրոֆեսիոնալ-տեխնիկական, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն կրթության հետագա կատարելագործման միջոցառումների մասին» հարցը և «ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ժողովրդական կրթության օրենսդրության հիմունքները» օրինագծի ընդունումը։

Երկրի ժողկրթության աշխատողները հաջողությամբ են կատարում աճող սերնդի ուսուցման ու կոմունիստական դաստիարակության խնդիրները, բարձրորակ կադրերի պատրաստման գործը։ Սակայն գիտա-տեխնիկական հեղափոխության արդի պայմաններում կյանքը նորանոր պահանջներ է ներկայացնում ինչպես ողջ հասարակությանը, այնպես էլ նրա յուրաքանչյուր անդամին, հետևաբար, է՛լ ավելի են աճում կրթական ցանցի դերն ու նշանակությունը։ Անհրաժեշտ է դառնում այնպիսի կադրերի պատրաստումը, որոնք իրենց գաղափարա-բարոյական հայացքներով, կրթամակարդակով և պրոֆեսիոնալ պատրաստականությամբ ունակ լինեն կենսագործելու կուսակցության առաջադրած խնդիրները։

Վիթխարի միջոցներ են հատկացվում նոր սերնդի կրթությանն ու դաստիարակությանը։ Միայն նախադպրոցական հիմնարկներում մեկ երեխայի պահպանման տարեկան ծախսերը կազմում են ավելի քան 400 ռուբլի, որի 80—85 տոկոսը վճարում է պետությունը։ Հանրակրթական դպրոցի մեկ աշակերտի համար տարեկան ծախսերը կազմում են մոտ 100, բուհերի յուրաքանչյուր ուսանողի համար՝ 1.100 ռուբլի։ Ավելացնենք, որ այժմ նախադպրոցական ցանցում ընդգրկված է ավելի քան 10 մլն երեխա, իսկ ուսուցման զանազան ձևերում՝ մոտ 81 մլն մարդ։ Ակնհայտ է, թե ինչպիսի ծավալ կունենան պետության կատարած ծախսերը։ Խոշոր գումարներ են հատկացվում նաև ուսումնա-նյութական բազայի հետագա բարելավմանը։ Բավական է ասել, որ նախորդ հնգամյակում բուհերի, տեխնիկումների, հանրակրթական դպրոցների և պրոֆտեխնիկական ուսումնարանների շինարարության համար ծախսվել է ավելի քան 5,5 մլրդ, իսկ ընթացիկում՝ նախատեսված է ավելի քան 8 մլրդ ռուբլի։ ՍՍՀՄ-ում 1974 թ. պետական բյուջեով սոցիալ-կուլտուրական միջոցառումներին հատկացվել է ավելի քան 70,2 մլրդ ռուբլի, որից 10 մլրդ-ը կազմում են միայն հանրակրթական դպրոցների վրա կատարվող ծախսերը։ Այս տարի հանրապետության ժողկրթության, գիտության և կուլտուրայի զարգացման համար նախատեսված է 338,1 մլն ռուբլի, որից հանրակրթական դպրոցների համար՝ 123,4, պրոֆտեխնիկական ուսումնարանների՝ 18,1, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների համար ավելի քան 59 մլն ռուբլի։

Լուսավորության բնագավառի ծախսերը ոչ միայն փոխհատուցվում են ամենակարճ ժամանակում, այլև զգալիորեն ազդում ազգային եկամտի վրա. ակադեմիկ Ս. Ստրումիլինի հաշվարկներով, ուսուցման վրա ծախսված յուրաքանչյուր մեկ ռուբլին ազգային եկամուտն ավելացնում է վեց ռուբլով (տե՛ս С. Г. Струмилин. **Эффективность образования в СССР**, «Экон. газета», 1962 г., № 14)։

Ուսումնասիրությունները վկայում են, որ ազգային եկամտի ընդհանուր աճի 26—27 տոկոսը ստացվում է ժողկրթության մակարդակի բարձրացման հաշվին։ Եվ դա բնական է. ազգային եկամտի աճի 80 տոկոսից ավելին ստացվում է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, իսկ վերջինս մեծապես պայմանավորված է արտադրության աշխատողների կրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակով։ Կ. Մարքսը նշել է, որ այլ գործոնների հետ աշխատանքի արտադրաուժը որոշվում է «բանվորների հմտության միջին աստիճանով», իսկ Վ. Ի. Լենինն աշխատավոր մասսաների «կրթական և կուլտուրական վերելքն» էր համարում աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոնը։

Պարզվել է, որ արտադրողների կրթամակարդակի բարձրացումն ուղիղ համեմատական է աշխատանքի արտադրողականության աճին։ Այսպես, տարիքի, աշխատանքային ստաժի և այլ պայմանների միանմանության դեպքում



կրթություն չունեցողների աշխատանքի արտադրողականությունը 40 տոկոսով ցածր է տարրական, 67 տոկոսով՝ թերի միջնակարգ և ավելի քան երկու անգամ՝ լրիվ միջնակարգ կրթություն ունեցողների հանդեպ։ Չէ՞ որ աշխատանքի արտադրողականության բարձրացումն արտահայտվում է ժամանակի միավորի ընթացքում թողարկված արտադրանքի քանակով։ Իսկ դա կախված է այն բանից, թե աշխատողները ինչպես են յուրացնում և օգտագործում տեխնիկան։ Բանիմաց կադրերը ժամանակի միավորի ընթացքում ստեղծում են արդյունքների ավելի մեծ քանակ և ավելի բարձր որակ։ Գաղտնիք չէ, որ ինչքան բարձր է արտադրության աշխատողների կրթության ու մասնագիտացման աստիճանը, այնքան ակտիվ է նրանց մասնակցությունն արտադրության կառավարման ու կատարելագործման, աշխատանքի լավագույն մեթոդների ու ձևերի մշակման մարզերում։ Կրթությունն ու որակավորումը թույլ են տալիս արդյունավետ օգտագործել աշխատաժամանակն ու արտադրամիջոցները, ավելի արագ հարմարվել աշխատանքի փոփոխություններին, կարճ ժամանակում տիրապետել ո՛չ միայն իրենց, այլև մի քանի հարակից մասնագիտությունների և ավելի խոր յուրացնել տեխնիկան։ Հաստոցների անսարքության պատճառով առաջացած պարապուրդների 70 տոկոսը բաժին է ընկնում այն խառատներին ու ֆրեզերագործներին, որոնք թերի միջնակարգ կրթություն ունեն։ Բացի այդ, միջնակարգի շրջանավարտներն երկու անգամ արագ են յուրացնում և տիրապետում նոր մասնագիտությունը, քան 8-ամյա կրթությամբ բանվորները։ Դա ակներև է դառնում հատկապես գիտա-տեխնիկական առաջընթացի հետ կապված նոր և բարդ մասնագիտությունները յուրացնելիս։ Նույն օրինաչափությունն է արտահայտվում արտադրանորմաների կատարման ու գերակատարման ժամանակ։ Այդ են վկայում Մոսկվայի Վ. Ի. Լենինի անվան պետական մանկավարժական ինստիտուտի սոցիալ-տնտեսական հետազոտությունների լաբորատորիայի ուսումնասիրության արդյունքները. միջնակարգ կրթությամբ չորրորդ կարգի փականագործ-գործիքագործի արտադրանորմաների կատարման ցուցանիշները, միջին հաշվով, 25—30 տոկոսով բարձր են նույն տարակարգի թերի միջնակարգ կրթություն ունեցողներից։ Հանրապետությունում ևս նույն պատկերն է. հավասար պայմաններում 8—10-րդ դասարաններն ավարտածներից խոտան է տալիս յուրաքանչյուր հինգերորդ, իսկ տարրական կրթություն ունեցողներից՝ յուրաքանչյուր երկրորդ բանվորը։

Ժողկրթության ծախսերի արդյունավետությունն երևում է նաև այն անմիջական կապից, որ գոյություն ունի աշխատավորության կրթամակարդակի և ստեղծագործական ակտիվության միջև։ Այն արտահայտվում է արտադրության կառավարման, ԱԳԿ-ի բնագավառում ակտիվ մասնակցությամբ, աշխատանքի նկատմամբ ունեցած կոմունիստական վերաբերմունքով, նորարարական շարժման ծավալմամբ և այլ ձևերով։

Աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի անշեղ աճն ու բազմակողմանի զարգացումը զգալիորեն բարձրացնում են նրանց ստեղծագործական ակտիվությունը, հատկապես նորագույն տեխնիկայի ստեղծման ու ներդրման, մոդեռնացման և կատարելագործման ասպարեզում։ Գյուտարարներն ու նորարարները իրենց պրպտող, ստեղծագործ միտքը, անսպառ եռանդն օգտագործում են ժողտնտեսության բոլոր ճյուղերի հետագա վերելքն ապահովելու, գիտա-տեխնիկական առաջընթացն արագացնելու, իններորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու նպատակին։ Միայն 1973 թ. արտադրության նորարարները ժողտնտեսության մեջ ներդրել են 3,7 մլն գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկություն. դրանք, մեկ տարվա հաշվով, տալիս են շուրջ 3,5 մլրդ ռուբլու խնայողություն։ Հանրապետության նորարարների հոծ բանակը հնգամյակի անցած երեք տարում արմատավորել է 42 հազար առաջարկություն՝ ավելի քան 96 մլն ռուբլու պայմանական օգուտով։

Աշխատավորների կրթական մակարդակի բարձրացման և տեխնիկայի ասպարեզում նրանց ստեղծագործական ակտիվության դրսևորման արտահայտությունն այն է, որ նորարարական շարժումը մասսայական բնույթ է ստանում։ Ավելին, մասնակիցների գերակշռող մասը բանվորներ են, որոնցից շատերն

արժանացել են վաստակավոր ռացիոնալիզատորի կոչման։ Նրանց արժեքավոր առաջարկությունների ներդրումը նպաստում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, հումքի, նյութերի և էներգիայի տնտեսմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանն ու արտադրության բուռն վերելքին։ Այստեղ ևս խիստ տարբերակում է նկատվում. եթե միջնակարգ կրթության տեր բանվորներից ռացիոնալիզատոր է յուրաքանչյուր չորրորդը, ապա թերի միջնակարգից՝ յուրաքանչյուր քսաներորդը։ Մեծ է ճեղքվածքը նաև նրանց առաջարկությունների քանակի և տնտեսական արդյունավետության միջև։ Ժողկրթության ընդլայնումը և աշխատավորության կրթամակարդակի անընդհատ բարձրացումը հնարավորություն են ընձեռում լայնորեն ու արդյունավետ օգտագործելու գիտա-տեխնիկական նվաճումները. գիտությունը դառնում է արտադրաում։

Ժողկրթության ոլորտում վիթխարի ծախսերի հրացումն առավել արդյունավետ կլինի, եթե յուրաքանչյուր ռուբլի ծառայի իր նպատակին։ Դա առաջին հերթին արտահայտվում է ուսման որակով։ Ժողկրթության բնագավառի տարբեր օղակներում ընդգրկված սովորողների մեծ մասը բարեխղճորեն է կատարում պարտականությունները, գիտակցում ներկայացվող պահանջները, ձգտում է բարձր առաջադիմության, ծրագրային նյութի խոր յուրացման։ Սակայն մի մասը ցածր առաջադիմությամբ ու անկարգապահությամբ ո՛չ միայն վնասում ի իրեն, այլև խանգարում մյուսներին։ Հայտնի է, որ 1975 թ. պետք է ավարտվի ընդհանուր միջնակարգ պարտուսի անցնելը, մինչդեռ վերջին մեկ տարվա ընթացքում հանրապետության դպրոցներից դուրս է մնացել ավելի քան 7.082 աշակերտ։ Մեղավոր են ո՛չ միայն ծնողներն ու սովորողները, այլև մանկավարժական կոլեկտիվները։

Անցած տարվա ընդունելության քննությունները ցույց տվեցին, որ շատ դպրոցներում ցածր է ուսման որակը։ Մանկավարժական առանձին կոլեկտիվներ լուրջ մոտեցում չեն ցուցաբերում ուսումնա-դաստիարակչական հարցերին։ Դրա վկայությունն էին բուհերի 30.277 դիմորդների մեծ մասի «անբավարար» գնահատականները։ Պակաս մտահոգիչ չէ այն հանգամանքը, որ ուսանողների զգալի մասը ցածր առաջադիմության պատճառով դուրս է մնում բուհից։ Այսպես, Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտից վերջին երկու տարում հեռացվել են շուրջ 2.000 ուսանողներ։ Սա նշանակում է, որ ժողտնտեսությունը, պետությանն ու հասարակությանը վիթխարի վնաս է հասցվել, պակաս է ստանում ինժեներական այդքան կադրեր։ Նույն վիճակն է և ընթացիկ ուսումնական տարում հանրապետության մյուս բուհերում։

Ստեղծված են սովորելու և մասնագիտանալու հիանալի պայմաններ, սակայն կարևորվում է հնարավորությունների արդյունավետ օգտագործումը։ Ամեն մի ուսանող պետք է գիտակցի, որ ուսումնառությունը ամենակարևոր ու պատասխանատու շրջանն է, հետևաբար, անհրաժեշտ է այն անցկացնել կազմակերպված ու բովանդակալից, յուրացնել ուսումնական պլաններով ու ծրագրերով նախատեսվածը։ Ուսանողների համամիութենական հավաքում ընկ. Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ուսանողական շրջանը լինելով կարճատև՝ խոր հետք է թողնում ողջ կյանքի վրա. որքան ծանրակշիռ է այդ տարիներին ձեռք բերած գիտելիքների, կուլտուրայի և հասարակական հմտությունների պաշարը, մարդն այնքան վստահ է քայլում։

Ժողկրթության ծախսերի արդյունավետությունը շրջանավարտների ստացած գիտելիքների ճիշտ օգտագործումն է պրակտիկայում, տնտեսության տարբեր բնագավառներում։ Նորավարտ մասնագետների ճնշող մեծամասնությունն ըմբռնում է իր պարտքն ու պարտականությունը։ Ցավոք, կան երիտասարդներ, որոնք խուսափում են նշանակված վայրերում աշխատելուց, վանազան «օբյեկտիվ» պատճառներով խուսանավում են՝ քաղաքում մնալու համար։ Անցյալ տարի մոտ 200 շրջանավարտ չներկայացավ մանկավարժական աշխատանքի այն դեպքում, երբ հանրապետության շրջանների շատ դպրոցներում նրանց պահանջը մեծ է։ Ոմանք էլ անտեսում են կատարված ծախսերը, «փոխում»



մասնագիտությունը, աշխատում հասարակայնորեն սակավանշանակ տեղամասերում, որը չի ապահովում ցանկալի արդյունք։ Հակադրություն է ծագում հասարակական և անձնական շահերի միջև։ Հասարակությունը զգալի վնաս է կրում, երբ մանկավարժական կամ ինժեներական կրթությամբ կադրերը հայտնվում են վաճառասեղանների մոտ կամ կատարում նմանօրինակ այլ աշխատանքներ։ Նշանակում է՝ ստացած կրթությունը, գիտելիքները չեն ծառայում նպատակին, կորչում են ապարդյուն։

Առանձին դեպքերում, ստանալով բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն, երիտասարդներն աշխատում են որպես բանվոր, որովհետև վերջինիս աշխատավարձն ավելի բարձր է, քան ինժեներա-տեխնիկական աշխատողներինը։ Համապատասխան կազմակերպությունները պետք է որոշակի կարգավորվածություն մտցնեն աշխատավարձի, նյութական խրախուսման, կրթության և գիտելիքների գնահատման գործում։ Միաժամանակ անհրաժեշտ է որոշակի միջոցներ ձեռնարկել այն անձանց նկատմամբ, որոնք չեն կատարում իրենց պարտականությունները հասարակության հանդեպ։

Կրթության բնագավառում կատարված ծախսերի արդյունավետությունը պայմանավորված է ոչ միայն մարդկանց խոր ու բազմակողմանի գիտելիքներով, այլև նրանց գաղափարական, քաղաքական կոփվածությամբ, կոմունիստական համոզվածությամբ, կուսակցության կողմից առաջադրված խնդիրների կատարմամբ։ ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիայում իր զեկուցման մեջ ընկ. Կ. Տ. Մազուրովը նշեց, որ մեր հասարակության մեջ կրթության ծախսերի արդյունավետությունը որոշվում է ոչ միայն կադրերի գիտա-արտադրական որակավորման ցուցանիշներով, այլև իրենց բոլոր ընդունակությունները, գիտելիքներն ու տաղանդը հասարակությանն ի սպաս դնելու միլիոնավոր աշխատավորների պատրաստակամության և կարողության աստիճանով։

Ժողովրդական կրթության զարգացումն ու նրան ներկայացվող պահանջների բավարարումը մեծապես կնպաստեն մեր առաջընթացին, սոցիալ-տնտեսական պրոբլեմների հաջող լուծմանը։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Նոյեմբերի 26-ին մոնղոլ ժողովուրդը հանդիսավոր պայմաններում նշեց նշանակալից տարելիցները՝ երկրի զարգացման ոչ-կապիտալիստական ուղին ազդարարող ՄԺՀԿ III համագումարի և Մոնղոլական ժողովրդական Հանրապետության հռչակման 50-ամյակը։

Մոնղոլական ժողովրդական հեղափոխությունը, որը կատարվեց մեծ Հոկտեմբերի ազդեցությամբ, ազատագրեց մոնղոլ ժողովրդին։ Նա ոտքի ելավ՝ թոթափելու աղքատությունն ու հետամնացությունը։ Սովետական պետությունն իր գոյության առաջին իսկ օրերից չեղյալ հայտարարեց բոլոր ոչ իրավահավասար պայմանագրերն ու համաձայնագրերը, որոնք ցարական Ռուսաստանը պարտադրել էր Մոնղոլիային։ 1918 թ. սկզբին սովետական կառավարությունը Մոնղոլիային առաջարկեց հաստատել դիվանագիտական հարաբերություններ։ Մոնղոլ և սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը Մոնղոլիայի հաջողությունների աղբյուրն է, անկախ սոցիալիստական երկրի գոյության ու բարգավաճման հուսալի երաշխիքը։ Սուխե-Բատորի ղեկավարությամբ անցած ՄԺՀԿ I համագումարում արդեն ակներև դարձավ, որ մոնղոլական հեղափոխության հաղթանակի անհրաժեշտ պայմանը Սովետական Ռուսաստանի օգնությունն է։ Մոնղոլական հեղափոխության պանծալի ղեկավար Սուխե-Բատորը Սովետական Միությունը համարում էր մոնղոլ և մյուս բոլոր ճնշված ժողովուրդների հուսալի, հավատարիմ բարեկամը, որն ունակ է եղբայրաբար օգնելու նրանց ազգային ու սոցիալական ազատագրության համար մղվող պայքարում։

Անձնվեր աշխատանքով, Մոնղոլիայի ժողովրդա-հեղափոխական կուսակցության գլխավորությամբ, Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների օգնությամբ, մոնղոլ ժողովուրդը վիթխարի հաջողությունների է հասել սոցիալիզմի կառուցման գործում։ Պատմական կարճ ժամանակամիջոցում ժողովրդական Մոնղոլիան, շրջանցելով զարգացման կապիտալիստական փուլը, ֆեոդալիզմից անցավ սոցիալիզմին։ Նախապատրաստելով նյութական ու հոգևոր անհրաժեշտ նախադրյալներ ֆեոդալական հասարակական հարաբերությունները սոցիալիստականով փոխարինելու համար, մոնղոլ ժողովուրդը հեղափոխության սոցիալիստական փուլում հասավ էկոնոմիկայի պետական ու կոոպերատիվ սեկտորների ամրապնդման, արդյունաբերական շինարարության լայն ծավալման, ապահովեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը։ Սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումները հանգեցրին էկոնոմիկայի տարբեր կացութաձևերի վերացման, սոցիալիստական արտադրահարաբերությունների և ժողովրդական տնտեսության սոցիալիստական սիստեմի հաստատման։

«Ձեր կեսդարյա փորձը,— Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության հռչակման 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը,— հեղափոխական մտքի ու գործողության խոշոր նվաճումն է։ Հենց այստեղ, ձեր հողում, ինչպես որ մի շարք սովետական հանրապետություններում, իրողություն դարձավ Վ. Ի. Լենինի գաղափարը՝ կապիտալիզմը շրջանցելով սոցիալիզմին անցնելու մասին։ Դա մոնղոլական կոմունիստների, մոնղոլ ժողովրդի հսկայական ավանդն է համաշխարհային հասարակական զարգացման պրոցեսի մեջ»։



Այժմ սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը ժողտնտեսության հիմնական արտադրաֆոնդերում կազմում է 99,9 տոկոս, ազգային եկամտի մեջ՝ 99,99, արդյունաբերության համախառն արտադրանքում՝ 100, գյուղատնտեսության համախառն արտադրանքում՝ 99,9 տոկոս։

Անշեղ զարգանում է սոցիալիստական ինդուստրիան։ Նրա համախառն արտադրանքը, 1940 թ. համեմատությամբ, 1973-ին ավելացավ 18,6 անգամ։ Ստեղծվել են արդյունաբերական նոր կենտրոններ, արդյունաբերության տարբեր ճյուղեր, մասնավորապես՝ վառելիքաէներգետիկ, լեռնահանքային, մետաղամշակման, շինանյութերի։

Որակական փոփոխություններ են տեղի ունեցել հասարակության դասակարգային կառուցվածքում. 1973 թ., 1940 թ. համեմատությամբ, բանվորների ու ծառայողների թիվն ավելացել է 6,7 անգամ։ 1969 թ. մարդահամարի տվյալներով բանվորներն ու ծառայողները, ընտանիքներով հանդերձ, կազմում են Մոնղոլիայի ողջ բնակչության 56,5, իսկ գյուղատնտեսական կոոպերատիվների անդամները՝ 43,4 տոկոսը։ Տնտեսության մեջ արմատական փոփոխություններն ուղեկցվել են աշխատավորների կուլտուրական ակնհայտ վերելքով։ ՄԺՀԿ-ի գլխավոր գիծը սոցիալիզմի կառուցման ավարտման ժամանակաշրջանում, դրա իրականացման ուղիներն ու միջոցները սահմանված են կուսակցության ծրագրով, որն ընդունվել է 1966 թ. ՄԺՀԿ XV համագումարում։ Այնտեղ ասված է, որ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունում, սոցիալիզմի կառուցման ավարտման ժամանակաշրջանում, ՄԺՀԿ-ի գլխավոր խնդիրն է սոցիալիստական հասարակության արտադրաուժերի բոլոր ամենայնի զարգացումը՝ գիտա-տեխնիկական արդի առաջընթացի նվաճումների հիման վրա, երկրի տնտեսական հզորության, բարձր տեմպերի աճի ապահովման և սոցիալիստական կուլտուրայի վերելքի, հասարակական նոր հարաբերությունների կատարելագործման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բարելավման հիման վրա։

Կենսագործելով կուսակցության առաջադրանքները՝ վերջին տարիներս ՄԺՀ-ն խոշոր առաջընթաց է կատարել սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման բնագավառում։ Մոնղոլիան ընթանում է ինդուստրիալ-ագրարային զարգացման ուղիով. այս ասպարեզում կարևոր փուլ է ՄԺՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—75 թթ. հնգամյա պլանը, որի դիրեկտիվները հաստատվել են ՄԺՀԿ XVI համագումարում։ Լայն, բազմակողմանի գործունեություն են ծավալել կուսակցական կազմակերպությունները, մոբիլիզացնելով աշխատավորությանը՝ կենսագործելու ՄԺՀԿ XVI համագումարի որոշումները, կատարելու հինգերորդ հնգամյակը։ 1973 թ. հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին գրեթե 70 տոկոսով աճել է ազգային եկամուտը։ Արդյունաբերական համախառն արտադրանքի թողարկումն ավելացել է 8,3, գյուղատնտեսական համախառն արտադրանքի ծավալը՝ ավելի քան 13 տոկոսով։ Գերակատարվել են կապի միջոցների, հատավաճառ առևտրի, արտաքին առևտրի ընդլայնման պլանները։ Նշանակալի են հասումներն աշխատավորների նյութական բարեկեցության, կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում։ Հաջողությամբ են պսակվել Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության գյուղի աշխատավորների ջանքերը. 1973 թ. մոտ 8 միլիոնի է հասել մատղաշի գլխաքանակը, կլիմայական դժվարին պայմաններում հավաքվել է հացահատիկի ռեկորդային բերք— մոտ 500 հազար տոննա։ Անասնապահական օբյեկտների շինարարության պլանը կատարվել է 110 տոկոսով։ Կառուցվել է 1.190 ջրհոր, ջրարբիացվել են 3 միլիոն հեկտար արոտավայրեր, գերակատարվել է խոտի մթերման տարեկան պլանը։ Այժմ, երկրի նշանակալից տարելիցների առթիվ, աշխատանքային կոլեկտիվները ծավալել են համաժողովրդական սոցիալիստական մրցություն հնգամյակի 1974 թվականի ժողովրդատնտեսական պլանի գերակատարման համար։

Սերունդները հաջորդում են իրար, բայց անվերջանալի են աշխատանքային սխրանքները, որ գործել, գործում և գործելու են մոնղոլ երիտասարդները՝ ՄԺՀԿ հմուտ ղեկավարությամբ։ Մոնղոլիայի երիտասարդության Հեղափոխական Միության անդամներն ամենուր են՝ հարվածային կառույցների բոլոր տեղամասերում— Դարխանի ու Չոյբալսանի արդյունաբերական կոմպլեքսներում, Շարինգոլի ածխահանքերում, նրանք յուրացնում են անապատային հողերը, կառուցում քաղաքներ, պեղում երկրի ընդերքը՝ բնական նորանոր հարստություններ հայտնաբերելու, դրանք ժողովրդի բարօրությանը ծառայեցնելու նպատակով։

Անցյալ ու ներկա բոլոր հաջողությունների համար մոնղոլ ժողովուրդը պարտական է իր կուսակցությանը, որն արդեն կես դարից ավելի է, ինչ երկիրը տանում է սոցիալիզմի ուղիով, անշեղորեն հիմնելով իր քաղաքականությունը մարքս-լենինյան ուսմունքի վրա։ Ձևավորվելով որպես արաթ աշխատավորների կուսակցություն, ՄԺՀԿ-ն աճեց ու դարձավ բոլոր աշխատավորների մարքս-լենինյան ավանգարդը Մոնղոլիայում, նրանց տնտեսական ու կուլտուրական կյանքի վերափոխումների կազմակերպիչն ու ղեկավարը, կոմունիստների ինտերնացիոնալ ընտանիքի արժանավոր անդամը։ Որպես մարքս-լենինյան կուսակցություն, ՄԺՀԿ-ն ձևավորվել է Սովետական Միության կոմունիստների եղբայրական օգնությամբ։ ՍՄԿԿ գործունեությունը հանդիսանալով մարքս-լենինյան գաղափարներին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին նվիրվածության օրինակ, մշտապես ոգեշնչել է մոնղոլ կոմունիստներին։ Հայացքների և գործողությունների միասնությունը, եղբայրական սերտ համագործակցությունն ու փոխօգնությունը եղել և մնում են ՄԺՀԿ և ՍՄԿԿ, ինչպես և սոցիալիստական մյուս երկրների լենինյան կուսակցություններին բնորոշ մարքսիստական գիծը։

Ղեկավարելով սոցիալիստական էկոնոմիկան ու կուլտուրան, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործը՝ ՄԺՀԿ-ն անդուլ կատարելագործում է կուսկազմակերպությունների աշխատանքը, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում հասնում նրանց ղեկավար դերի բարձրացման։ Կուսակցության ղեկավար դերի աճն ամենից առաջ պայմանավորված է նրա պատասխանատվության հետևողական բարձրացմամբ. պատասխանատվություն այն բանի համար, որ բոլոր կուսկազմակերպությունները, յուրաքանչյուր կոմունիստ ամեն ինչ անեն ՄԺՀԿ ծրագրի, ժողովրդատնտեսական պլանների կատարման, սոցիալիստական հասարակարգի հետագա առաջընթացի, Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների հետ. եղբայրական բարեկամության, բազմակողմանի համագործակցության ամրապնդման համար։

Սոցիալիզմի կառուցման ասպարեզում մոնղոլ ժողովրդի պատմական նվաճումները արձանագրված են ՄԺՀ նոր սահմանադրության մեջ, որն ընդունվել է 1960 թվականին, պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ Ժողովրդական Մեծ Խուրալի չորրորդ գումարման առաջին սեսիայում։

«Այսօր տոնելով Մոնղոլիայի կյանքի մեծ տարեթիվը,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— մենք մաքուր խղճով կարող ենք ասել, որ մեր երկրների ժողովուրդները միշտ և ամեն ինչում ապրել են միասնական խոհերով և, իբրև եղբայրներ, օգնել միմյանց»։

Տարեցտարի զարգանում, ընդլայնվում ու ամրապնդվում են բարեկամությունն ու համագործակցությունը Սովետական Միության, ՄԺՀ և սոցիալիստական մյուս երկրների միջև։ ՄԺՀ-ի համար որակական նոր փուլ էր ՏՓԽ-ի շրջանակներում (որի մեջ նա մտավ 1962 թ.) սոցիալիստական տնտեսական համագործակցության անդամ դառնալը։ Այդ քայլը ծառայում է էկոնոմիկայի, քաղաքականության, կուլտուրայի և հասարակական կյանքի մյուս բնագավառների ինտեգրացման օբյեկտիվ պրոցեսի հետագա խորացմանը։ 1961—73 թվականներին Սովետական Միության տեխնիկա-տնտեսական օգնությամբ, ինչպես և նրա ուժերով ու միջոցներով ՄԺՀ-ում կառուցվել են 150-ից ավելի օբյեկտներ— ածխահանքեր, ջերմաէլեկտրակայաններ, էլեկտրահաղորդման գծեր, թեթև, սննդի և շինանյութերի արդյունաբերական ձեռնարկություններ, նավ-



թաբազաներ, բնակելի, կուլտուր-կենցաղային շենքեր և այլն։ Սովետական Միությունն օգնեց Մոնղոլիային՝ կազմակերպելու պետական տնտեսություններ ու գյուղատնտեսական միավորումներ, կառուցելու խտացված կերի 10 ձեռնարկություն և արտադրամասեր՝ տարեկան 90 հազար տոննա նախագծային հզորությամբ, համակցված կերի երեք տնտեսություն, կերի 16 պահեստ՝ 2 հազար տոննա կերածավալով։

Լայնորեն ծավալվել է ՄԺՀ-ի և ՍՍՀՄ-ի գիտա-տեխնիկական համագործակցությունը։ 1966 թ. սովետական կուսակցական ու կառավարական պատվիրակությունը, Լ. Ի. Բրեժնևի ղեկավարությամբ, այցելեց Մոնղոլական Ժողովրդական Հանրապետություն։ Մոնղոլիայի և ՍՍՀՄ-ի միջև կնքվեց բարեկամության, համագործակցության, փոխօգնության պայմանագիր, որը նոր փուլ հանդիսացավ երկու երկրների ժողովուրդների բարեկամության, համագործակցության ասպարեզում։ Սոցիալիստական ինտեգրացիայի իրականացման վառ արտահայտությունն է այն և բարերար ազդեցություն է գործում Մոնղոլիայի ժողովրդական տնտեսության զարգացման վրա։ 1972—75 թթ. համար նախանշված գիտա-տեխնիկական հետազոտությունների՝ կենսագործվող պլանները նպաստում են հանրապետության ժողովրդական տնտեսության առջև ծառացած արմատական խնդիրների լուծմանը։

«Մոնղոլ կոմունիստներն իրենց պատմական ու կենսական առաջնահերթ անհրաժեշտ խնդիրն են համարում միջազգային հեղափոխական շարժման հետ ունեցած կապերի զարգացումն ու ամրապնդումը, խորապես հասկանալով, որ այդ կապերի դյուզն իսկ թուլացումը, ազգային մեկուսացման ամեն մի քայլ կապված են իմպերիալիստական տերություններից կախման մեջ ընկնելու վտանգի հետ, որը, ի վերջո, կհանգեցնի հեղափոխական նվաճումների և պետական անկախության կորստին։ Այս է ՄԺՀԿ ինտերնացիոնալ քաղաքականության էությունը, ազգային շահերի ու ինտերնացիոնալ խնդիրների օրգանական զուգորդման հիմքը»,— գրել է Յու. Ցեդենբալը («Коммунист», 1974 թ. № 16, էջ 91—92)։

Մոնղոլ աշխատավորներն այժմ բոլոր ջանքերը գործադրում են կարևորագույն պատմական խնդրի լուծման— սոցիալիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար։ Աննախընթաց չափերով աճում է արդյունաբերական արտադրությունը, որը մոտ ապագայում կապահովի անցումը ագրարային-արդյունաբերականից արդյունաբերական-ագրարային երկրի։

Մոնղոլ և սովետական ժողովուրդների բարեկամությունը՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ։ Այն լիովին արտահայտվում է մոնղոլ ժողովրդի ամենօրյա նորոգ կյանքում։ Հետադարձ հայացք նետելով անցած հիսուն տարիներին, կարելի է հպարտությամբ ասել, որ երկարամյա համատեղ պայքարը նոր հասարակարգի կառուցման համար՝ գաղափարների, նպատակների միասնությամբ, հավերժ բարեկամությամբ են կապել մոնղոլ ու սովետական ժողովուրդներին։

Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի գործուն ձևերից և նյութական, ֆինանսական ու աշխատանքային ռեսուրսների խնայողության կարևոր միջոցներից է համատեղ ձեռնարկությունների և միջազգային տնտեսական միավորումների ստեղծումը։ Այս տարվա հոկտեմբերի 20-ին լրացավ ՄԺՀ-ի ազգային երկրաբանական ծառայության 35 տարին։ ՏՓԽ-ի երկրների համատեղ ջանքերով Մոնղոլիայում բացված են օգտակար հանածոների— գունավոր, հազվագյուտ, թանկագին և սև մետաղների, վառելիքային և շինարարական նյութերի, ֆոսֆորիտների ավելի քան 500 հանքեր։ Էրդենեթում սովետա-չեխոսլովակյան էքսպեդիցիաների օգնությամբ շահագործման նախապատրաստվեց աշխարհի խոշորագույն պղնձա-մոլիբդենային հանքավայրերից մեկը։ Դրա հիման վրա այժմ կառուցվում է սովետա-մոնղոլական լեռնահանքային ձեռնարկությունը՝ երկու երկրների բարեկամության մի նոր խորհրդանիշը. բարձրանում է այդտեղ սոցիալիստական մի նոր քաղաք՝ արդյունաբերական կոմպլեքսով— լեռնահարստացուցիչ կոմբինատով, Սալխիտ—Էրդենեթ ավտոճանապարհով, Դարխան—Էրդենեթ բարձրավոլտ էլեկտրահաղորդման գծով։

*Սովետական Միությունից և սոցիալիստական մյուս երկրներից եկած որակյալ բանվորներն ու մասնագետներն աշխատում են մոնղոլների հետ մեկտեղ, օգնում նրանց ազգային կադրերի պատրաստման գործում։*

*Հանքարդյունաբերության հետագա զարգացման համար կարևոր նշանակություն ունի 1973 թ. ստեղծված «Մոնղոլսովցվետմետ» մոնղոլա-սովետական տնտեսական միավորումը։*

*Զարգանում և ամրապնդվում են ՄԺՀ բարեկամությունն ու համագործակցությունը նաև ՏՓԽ անդամ մյուս երկրների հետ։ Նրանց օգնությամբ Մոնղոլիայում իրականացվում են երկրաբանա-հետախուզական, շինմոնտաժային, գիտա-հետազոտական աշխատանքներ։ Այս ասպարեզում արգասաբեր է հատկապես ՄԺՀ-ի, Սովետական Միության, Հունգարիայի, Բուլղարիայի, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության, Չեխոսլովակիայի և Լեհական Ժողովրդական Հանրապետության մասնագետների, գիտնականների համագործակցությունը։ ՏՓԽ-ի երկրները որոշել են 1976 թ. Մոնղոլիայում կազմակերպել միջազգային երկրաբանական խոշոր գիտարշավ. այդ նպատակով ՏՓԽ-ն Ժողովրդական Հանրապետությանն անվերադարձ կհատկացնի 20 մլն ռուբլի։ Բուլղարիայի տեխնիկա-տնտեսական օգնությամբ են կառուցվել մուշտակի ֆաբրիկան՝ Դարխանում, նորագույն տեխնիկայով կահավորված մսի կոմբինատը՝ Չոյբալսանում, Ուլան-Բատորի շրջանում ավարտվել է խոզաբուծական տնտեսության, ինչպես և ջերմոցների կառուցումը, իսկ Օրխոն Տարինգոլում, Սելենգինյան այմակում կառուցվում է պտղաբանջարաբուծական տնտեսություն, որը մոտ ապագայում կվերածվի ագրո-արդյունաբերական կոմպլեքսի։*

*Հունգարական Ժողովրդական Հանրապետությունն օգնել է կառուցելու բիոկաբրոնատի և կարի ֆաբրիկաները Ուլան-Բատորում, մսի կոմբինատը՝ Դարխանում։ ԳԴՀ-ի եղբայրական օգնությամբ են հիմնվել մսի խոշոր կոմբինատը, գորգի ֆաբրիկան և օֆսեթ տպագրության ձեռնարկությունը Ուլան-Բատորում։ Բուրեն-Ցոգտում վերակառուցվում է վոլֆրամի հանքի հարստացուցիչ ֆաբրիկան... Լեհական Ժողովրդական Հանրապետության օգնությամբ կառուցվել են Ուլան-Բատորի թեթև բետոնի գործարանը և փայտամշակման կոմբինատը, Դարխանի սիլիկատային աղյուսի գործարանը և այլ ձեռնարկություններ։*

*Չեխոսլովակիայի տեխնիկա-տնտեսական օգնությամբ շահագործման են հանձնվել արդյունաբերական այնպիսի կարևոր օբյեկտներ, ինչպիսիք են՝ կոշիկի ֆաբրիկան, կաշվի գործարանները, Դարխանի ցեմենտի գործարանը։ Մոնղոլիայի հյուսիսային շրջաններում չեխոսլովակյան մասնագետները երկրաբանա-հետախուզական աշխատանքներ են ծավալել գունավոր ու հազվագյուտ մետաղների առանձին տեսակների հայտնաբերման նպատակով։*

*Երկկողմ տնտեսական համագործակցության արագացման ու ամրապնդման նպատակով ստեղծվել են Մոնղոլիայի և Սովետական Միության, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության, Հունգարիայի Ժողովրդական Հանրապետության, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության և Լեհական Ժողովրդական Հանրապետության տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության միջպետական հանձնաժողովներ։*

*Հինամյա Ժողովրդական Մոնղոլիայում խոր վերափոխություններ են տեղի ունեցել նաև կուլտուրայի, գիտության բոլոր մարզերում։ Ասիայի առաջին սոցիալիստական երկրում 40-ական թվականներից ծավալված կուլտուրական հեղափոխությունը բնութագրվում է ժողովրդական լուսավորության սիստեմում կատարված վիթխարի առաջընթացով, առողջապահության ցանցի ընդլայնմամբ ու ամրապնդմամբ, գիտության, արվեստի ու գրականության աննախընթաց զարգացմամբ։ 50-ական թվականներին հիմնականում վերացավ անգրագիտությունը։ 1946 թ. Ուլան-Բատորում բացվեց Մոնղոլիայի պետական համալսարանը, 1961 թ.՝ գիտությունների և բարձրագույն կրթության կոմիտեի բազայի վրա՝ գիտությունների ակադեմիան։ 400 հազարից անցնում է հանրակրթական դպրոցներում, տեխնիկումներում ու բուհերում սովորողների թիվը։*



*Ինչպես մեր Միությունում, Մոնղոլիայում ևս գրականությունն այսօր զարգանում է սոցիալիստական ռեալիզմի մեթոդով։ Ակնբախ հաջողություններ են ձեռք բերվել թատրոնի, երաժշտության, կինոարվեստի, նկարչության, քանդակագործության ասպարեզներում, թատրոնները, կուլտուրայի տներն ու ակումբները, կինոթատրոններն ու շրջիկ կինոն, գրադարաններն ու կարմիր անկյունները, հրատարակվող ամսագրերն ու թերթերը խթանում են մոնղոլ ժողովրդի կուլտուրական, գաղափարական զարգացման մակարդակի բարձրացումը, նպաստում նոր մարդու ձևավորման հույժ կարևոր գործին։*

*ՄԺՀ-ի օպերայի և բալետի պետական թատրոնը ժողովրդական արտիստ, պետական մրցանակի դափնեկիր, կոմպոզիտոր Բ. Դանդինսուրենի* Քառասուներկու անմոռաց օրեր *օպերայով է դիմավորում նորոգ Մոնղոլիայի 50-ամյա հոբելյանը՝ նվիրված ռուս և մոնղոլ ժողովուրդների բարեկամությանը։*

*Ինչպես աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ, աշխատավորները, մոնղոլ ժողովուրդը ևս խաղաղություն է տենչում։ Այդ նվիրական նպատակին են ծառայում 1961 թվականի հոկտեմբերից Միավորված ազգերի կազմակերպության անդամ ՄԺՀ-ի դիվանագիտական հարաբերությունները բազմաթիվ երկրների հետ, նրա ակտիվ մասնակցությունը միջազգային շատ կազմակերպությունների։ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը ինչպես Ասիայի մայրցամաքի, նույնպես և ողջ աշխարհի խաղաղության պաշտպանության նախանձախնդիրներից է։ Չէ՞ որ մեկն անհնար է առանց մյուսի։*

*Որոշակի է ՄԺՀԿ-ի դիրքը չինական այժմյան ղեկավարների վարած քաղաքականության նկատմամբ։ Մոնղոլ կոմունիստները ևս անհաշտ պայքար են մղում մաոիզմի թշնամական տեսության, պրովոկացիոն, քայքայիչ գործողությունների դեմ։ Այդ դիրքորոշումը ներհակ է ՄԺՀԿ-ի կառավարության՝ սահմանակից ՉԺՀ-ի հետ միջպետական հարաբերությունների նորմալացման սկզբունքային կուրսին։*

*Խաղաղությունն ու անվտանգությունը միջազգային բնույթ ունեն. դրանք հավասարապես կարևոր են և՛ Ասիայի, և՛ Եվրոպայի համար։ Ասիայում կոլեկտիվ անվտանգության սիստեմի ստեղծման առնչությամբ ՄԺՀԿ ԿԿ առաջին քարտուղար, ՄԺՀ Ազգային Մեծ Խուրալի նախագահության նախագահ Յումժագիյն Ցեդենբալն ասել է. «Ասիայի բոլոր պետությունների փոխհարաբերությունների հիմքում պետք է լինեն հարգանքը պետությունների անկախության, ինքնավարության, տերիտորիալ ամբողջականության հանդեպ, ներքին գործերին չմիջամտելը, զենքի գործադրումից, դրա գործադրման սպառնալիքից հրաժարվելը, իրավահավասարության ու փոխադարձ շահերի վրա հիմնված բարեկամական համագործակցության զարգացումը»։ Այդ սկզբունքներն են դրսևորված 1973 թվականի մոնղոլա-հնդկական, մոնղոլա-իրանական դեկլարացիաներում, 1974 թվականի՝ մոնղոլա-ինդոնեզական կոմյունիկեում, բանգլադեշյան դեկլարացիայում և այլ փաստաթղթերում։*

*Անցած 50 տարիներին Մոնղոլիայի ժողովուրդը, ՄԺՀԿ-ի ղեկավարությամբ, երկրի սոցիալ-տնտեսական և կուլտուրական կյանքում իրականացրել է հեղափոխական խոր վերափոխումներ. երբեմնի ֆեոդալական կիսագաղութային երկիրը դարձել է ծաղկող սոցիալիստական երկիր։ Եվ այդ ամենը հաղթանակած պրոլետարիատի առաջին երկրի՝ Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների անշահախնդիր եղբայրական օգնությամբ։ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը, ողջ մոնղոլ ժողովուրդը տնտեսության, կուլտուրական կյանքի նորանոր նվաճումներով նշանավորեց պատմական փառապանծ տարելիցները։*

*Այդ տարելիցներին նվիրված հանդիսությունները, որոնց մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ղեկավարած սովետական կուսակցական-կառավարական պատվիրակությունը, վառ կերպով դրսևորեցին Մոնղոլիայի, Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների անխախտ բարեկամությունը։*

քը, եթե շուտափույթ կերպով չկարգավորվեն, դեռ կարող են կողմնակի տերություններին գայթակղել իրենց ուժերը փորձել հրահրելու վտանգներ, որոնք շատ ավելի հեռուն են գնում կոնֆլիկտում մասնակցող կողմերի շահերի շրջանակներից»:

Ընդհանուր խաղաղության համար ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի մեծ պատասխանատվությունը մղում է նրանց հանգամանորեն քննարկել, փնտրել և գտնել համագործակցության եզրեր միջազգային հրատապ խնդիրները լուծելու համար: «Արդեն անցած երկու տարիները ցույց տվին,— նշել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— թե ինչպիսի օգտակար ազդեցություն այդ իմաստով կարող է ունենալ սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավումը: Այն, իհարկե, իր դրական դերը խաղաց և՛ Վիետնամում պատերազմի դադարեցման, և՛ Մերձավոր Արևելքում խաղաղ կարգավորման ուղղությամբ հայտնի առաջընթացի համար պայմաններ ստեղծելու, և՛ համաեվրոպական խորհրդակցություն հրավիրելու գործում»:

Մեծ են տեղաշարժերը սովետա-ամերիկյան առևտրա-տնտեսական հարաբերությունների արմատական վերակառուցման և զարգացման, գիտա-տեխնիկական համագործակցության ասպարեզում: Եթե 1971 թ. երկու երկրների առևտրի ընդհանուր ծավալը կազմեց 200 միլիոն դոլարից մի քիչ ավելի, ապա 1973 թվականին այն հասավ 1,3 միլիարդ դոլարի:

Ներկայումս ԱՄՆ-ը ՍՍՀՄ-ի հետ առևտուր անող զարգացած կապիտալիստական երկրների շարքում արդեն երկրորդն է: Սակայն առայժմ սովետա-ամերիկյան առևտրի զարգացումը տեղի է ունենում առավելապես Միացյալ Նահանգներից դեպի Սովետական Միություն արտահանությունը ավելացնելու հաշվին: Այսպես, վերջին երկու տարում արտահանությունը ԱՄՆ-ից ՍՍՀՄ ավելացել է 10 անգամ:

Սովետա-ամերիկյան առևտրա-տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության հիմքերի հիմքը եղել և մնում է փոխադարձ շահավետությունը:

Այս հարցում Սովետական Միությունն առաջնորդվում է երեք կարևոր նկատառումներով. արագորեն զարգացող գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում ոչ մի երկիր, որքան էլ հզոր ու հարուստ լինի այն, անկարող է միայնակ, հավասար հաջողությամբ և միևնույն տնտեսական արդյունավետությամբ զարգացնել արտադրության բոլոր ճյուղերը: Ուստի, անհրաժեշտ է այլ երկրների հետ մասնագիտացում և կոոպերացում: Այնուհետև, տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցությունը զարգացած կապիտալիստական երկրների, տվյալ դեպքում Միացյալ Նահանգների հետ, թույլ կտա նրանց ֆինանսական միջոցների, սարքավորումների և տեխնիկական փորձի օգտագործմամբ շրջանառության մեջ դնել բնական հարստությունների նորանոր պաշարներ, մասնավորապես Հյուսիսում, Սիբիրում և Հեռավոր Արևելքում:

Եվ, վերջապես, նոր յուրացվող բնական պաշարների մի մասի և արդյունաբերության արտադրանքի արտահանության շնորհիվ մեր երկիրը կվաստակի ստարերկրյա վալյուտա, որը կօգտագործվի սովետական ժողովրդի կենսամակարդակը անշեղորեն բարձրացնելու նպատակով:

Մյուս կողմից, ԱՄՆ-ի համար Սովետական Միության հետ առևտրա-տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցությունը զարգացնելն ունի կենսական նշանակություն: Միացյալ Նահանգների էներգիայի աղբյուրների բնական պաշարները, հատկապես նավթը և գազը սպառման վտանգի տակ են: Ուստի, ԱՄՆ-ը շահագրգռված է էներգիայի պակասը լրացնել Սովետական Միությունից ներմուծվելիք բնական գազով:

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցությունը վերաբերում է հանքային հանածոների պաշարների օգտագործման, նավթի ու գազի հանույթի և վերամշակման, նավթաքիմիայի, դեղագործության, սննդի արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման, նավահանգստային կառույցների կատարելագործման, գազային հոսքերի կառավարման համակարգում էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ներդրման, բեռնափոխադրումների ընդլայնման, միջուկային կառավարվող սինթեզի, քաղցկեղի բուժման միջոցների հայտնաբերման, սիրտ-անոթային հիվանդությունների բուժման, արհեստական սրտի ստեղծման, տիեզերական տարածությունը խաղաղ նպատակով յուրացնելու, օվկիանոսագիտության, օվկիանոսի հատակի հորատման բնագավառներին:

Առևտուրը և տնտեսական համագործակցությունը ոչ միայն ԱՄՆ-ի, այլև կապիտալիստական մյուս տերությունների հետ տեղի են ունենում գլխավորապես փոխհատուցման սկզբունքով: Դրա էությունն այն է, որ ՍՍՀՄ-ը այդ տերություններից ստանում է վարկ, որով գնում է անհրաժեշտ սարքավորումներ, մեքենաներ, նյութեր և ապրանքներ, ինչպես նաև առաջավոր տեխնոլոգիա: Ստացված վարկերը ՍՍՀՄ-ը աստիճանաբար մարում է



(փոխհատուցում է) հումքով և վարկերի հաշվին կառուցված արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքով:

Սովետա-ամերիկյան առևտրի զարգացման համար սկզբունքային նշանակություն ունի ՍՍՀՄ-ին առավելագույն նպաստավորության իրավունք ընձեռելու խնդիրը: Ռ. Նիքսոնի վարչության՝ այս կապակցությամբ կոնգրեսին արված դիմումները դրական արդյունքի չհասցրին: Այս ասպարեզում առայժմ ապարդյուն են անցնում նաև նոր պրեզիդենտի՝ Ջերալդ Ֆորդի կառավարության ջանքերը:

Անտարակույս, այս ամենը վկայում է սովետա-ամերիկյան առևտրա-տնտեսական հարաբերությունների բարելավման հակառակորդների առկայությունը կոնգրեսում և նրանից դուրս: Դրանք ամենից առաջ միջազգային լարվածության մեղմացման և Արևմուտքի ու Արևելքի միջև փոխըմբռնման թշնամիներն են, հակակոմունիզմի «ասպետները»: Արհմիութենական խոշորագույն կազմակերպության՝ ԱՖԼ-ԱԿԿ-ի աջակողմյան ղեկավարները պնդում են, որ իբր սովետա-ամերիկյան տնտեսական համագործակցությունը կուժեղացնի գործազրկությունը ԱՄՆ-ում: Այս պնդումն անհիմն է, որովհետև համագործակցության հետևանքն ավելի շատ կլինի գործարար ակտիվության և, հետևաբար, զբաղվածության աճը. ամերիկյան բազմաթիվ ձեռնարկությունների հարկ կլինի կատարել սովետական պատվերները: Մասնավորապես, ներկա ինֆլյացիայի պայմաններում, երբ Միացյալ Նահանգների վճարման հաշվեկշռի վիճակը խիստ անմխիթար է, սովետա-ամերիկյան առևտրա-տնտեսական հարաբերությունների զարգացումն ստանում է արտակարգ նշանակություն ԱՄՆ-ի համար:

Ի վերջո, պետք է վճռաբար մերժել այն կարծիքը, որ իբր այդ համագործակցությունը, հատկապես սովետական գազի և նավթի գնումը, ԱՄՆ-ին կախման մեջ է դնում Սովետական Միությունից և, հետևաբար, սասանվում է Միացյալ Նահանգների անկախությունը: Հազիվ թե հարկ կա ապացուցելու, որ համագործակցությունը երկուստեք թելադրված է տնտեսական անհրաժեշտությամբ: Տնտեսական կարիքների բավարարումը, անկախ աղբյուրից, միայն նպաստում է տվյալ պետության անկախության ամրապնդմանը, եթե այն տեղի է ունենում իրավահավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա: Այդ տեսակետից սխալ է սենատոր Հ. Ջեկսոնի այն պնդումը, որ իբր համագործակցությունը օգուտ է բերում միայն ՍՍՀՄ-ին: Սովետա-ամերիկյան հարաբերությունների նորմալացման թշնամիները կազմում են բավական խայտաբղետ մի կոալիցիա՝ այսպես կոչված «հրեաների պաշտպանության լիգայից» մինչև զանազան սպիտակգվարդիական խունացած մնացուկներ:

Եվ այնուամենայնիվ, ամերիկացիների ճնշող մեծամասնությունը ճիշտ է ըմբռնում սովետա-ամերիկյան համագործակցության դրական նշանակությունը երկու ժողովուրդների և ամբողջ աշխարհի համար:

Իսկական խաղաղությունը կարող է ապահովվել միայն նյութական գործոններով: Այդ գործոնները ո՛չ միայն սպառազինությունների կրճատման վերաբերյալ համաձայնություններն են, այլ նաև սովետա-ամերիկյան համագործակցությունը կյանքի ամենատարբեր ոլորտներում: Տնտեսական ու գիտա-տեխնիկական մեծ մասշտաբի ծրագրերն ու միջոցառումները, ընդհանուր շփման կետերը կողմերի միջև ոչ միայն ծնում են փոխադարձ վստահություն և փոխըմբռնում, այլև ստեղծում որոշակի, նպաստավոր քաղաքական պայմաններ, միջպետական հարաբերությունների նոր որակ: Պետությունների միջև լարվածությունը և ռազմական ընդհարման սպառնալիքը անհամատեղելի են երկարատև տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության հետ:

Իր նշանակությամբ առանձնանում է սովետա-ամերիկյան բարձր մակարդակի չորրորդ հանդիպումը Վլադիվոստոկի շրջանում, որ տեղի ունեցավ նոյեմբերի 23—24-ը: Այստեղ նոր պայմանագրեր և համաձայնագրեր չստորագրվեցին, այլ քննարկվեցին երկու երկրների հարաբերությունների զարգացման ընթացքը, ստրատեգիական հարձակողական զենքի հետագա սահմանափակման հարցը և միջազգային դրության մի քանի հրատապ խնդիրներ (Եվրոպա, Կիպրոս, Մերձավոր Արևելք և այլն): Սակայն այս արտահերթ հանդիպումը (հերթականը նախատեսված է 1975 թ. ԱՄՆ-ում), որը կոչվեց աշխատանքային, ուշագրավ է նրանով, որ տեղի ունեցավ Միացյալ Նահանգների քաղաքական կյանքում կարևոր փոփոխությունների պայմաններում: Այսպես կոչված «Ուոթերգեյթի գործի» պատճառով իր պաշտոնավարության ժամկետը լրանալուց երկու տարի առաջ Սպիտակ տնից հեռացել է Ռ. Նիքսոնը, պրեզիդենտի պաշտոնը ստանձնել է նախկին վիցե-պրեզիդենտ Ջերալդ Ֆորդը: Վերջինս իր իշխանության առաջին իսկ ամիսներին հանդիպում է լուրջ քաղաքական դժվարությունների: Նոյեմբերի սկզբի միջանկյալ ընտրություններից հետո մրցակից դեմոկրատական կուսակ-

ցությունն ավելի ամրապնդեց իր դիրքերը ներկայացուցիչների պալատում և սենատում: Այժմ այն բացարձակ մեծամասնություն է կազմում օրենսդիր իշխանության այդ օղակներում: Անտարակույս, հանրապետական պրեզիդենտին հեշտ չէ աշխատել կոնգրեսի հետ, որտեղ նրա կուսակցության դիրքերը շատ խարխուլ են, թեև դեմոկրատների ղեկավարությունը հայտարարում է, որ պաշտպանում է միջազգային լարվածության մեղմացման արտաքին-քաղաքական գիծը: ԱՄՆ-ի ներքին քաղաքական իրադրությունը բնութագրելիս անհրաժեշտ է նշել, որ Ջ. Ֆորդի պաշտոնավարության սկիզբը համընկավ ինֆլյացիայի աննախընթաց ուժեղացման և տնտեսական այնպիսի սուր անկման հետ, որի մեջ շատերը փորձում են տեսնել 1930-ական թվականների համաշխարհային տնտեսական ճգնաժամի վերադարձող ուրվականը:

Վլադիվոստոկի հանդիպումը կարևոր է հենց այն իմաստով, որ նկարագրված քաղաքական իրադրության մեջ և ամենից առաջ Վաշինգտոնում ադմինիստրացիայի փոփոխման պայմաններում վերահաստատում է սովետա-ամերիկյան հարաբերությունների նորմալացումը անդառնալի պրոցես դարձնելու փոխադարձ ձգտումը: Այդ հանդիպման կարևոր արդյունքն էր ստրատեգիական հարձակողական զենքը սահմանափակելու հարցի շուրջը մտքերի հանգամանալից փոխանակությունը: Ինչպես ասված է սովետա-ամերիկյան համատեղ հաղորդագրության մեջ, կողմերը հնարավոր են համարում այդ առթիվ նոր, 1977—1985 թթ. ժամանակաշրջանն ընդգրկող համաձայնագրի մշակումն ավարտել 1975 թվականին:

Վլադիվոստոկի հանդիպումը, անտարակույս, կարևոր նախապատրաստական փուլ է սովետա-ամերիկյան հարաբերությունների հետագա համակողմանի զարգացման և խորացման համար: «Այդ հանդիպման ընթացքում, որն անցավ լավ, կոնստրուկտիվ ոգով, նոր հաստատում և զարգացում ստացավ սովետա-ամերիկյան հարաբերությունների՝ վերջին տարիներին երևան եկած կուրսը,— Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը:— Երկու երկրների արտաքին գործերի մինիստրների հետ մենք հնարավորություն ունեցանք պրեզիդենտի հետ քննարկել սովետա-ամերիկյան հարաբերությունների, դրանց հետագա ամրապնդման ու զարգացման սկզբունքային հարցերը: Ընդ որում, ամենայն որոշակիությամբ հավաստվեց վճռականություն՝ գործելու այնպես, որ այդ հարաբերությունների զարգացումը ավելի ու ավելի արդյունավետ կերպով ծառայի պատմական խնդրի լուծմանը՝ մարդկությանը փրկելու նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքից, ամրապնդելու ընդհանուր խաղաղությունը»:

ԱՐԴԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԼԻՄԱՅԻ ԱՌՈՂՋԱՑՄԱՆ մյուս կարևոր գործոնը սոցիալիստական երկրների, մասնավորապես Սովետական Միության հետ ԳՖՀ-ի հարաբերությունների նորմալացումն է: Սովետա-արևմտագերմանական հարաբերությունների զարգացումը լիովին համապատասխանում է ՍՄԿԿ խաղաղության ծրագրի սկզբունքային դրույթներին և ոչ միայն համաեվրոպական, այլև միջազգային նշանակություն ունեցող երևույթ է:

Եվրոպայի պատմության մեջ այդ շրջադարձը ամենից առաջ եվրոպական անվտանգության, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության միջազգային դիրքերի և իրավունքների պաշտպանության, Եվրոպայում 2-րդ համաշխարհային պատերազմից հետո հաստատված սահմանների անձեռնմխելիության, Արևմտյան Բեռլինի հարցերում ՍՍՀՄ շրջահայաց քաղաքականության, նրա հստակ ու հաստատակամ դիրքորոշման արդյունք է: Չի կարելի նաև պատշաճը չհատուցել ԳՖՀ նախկին կանցլեր, հակաֆաշիստ Վիլի Բրանդտի «նոր արևելյան քաղաքականությանը»:

Երկու երկրների հարաբերությունների նորմալացման համար ելակետային նշանակություն ունեցավ 1970 թ. օգոստոսին Մոսկվայում ստորագրված պայմանագիրը: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի գնահատմամբ, այդ իրապես պատմական պայմանագիրը դրեց ԳՖՀ և սոցիալիստական համագործակցության երկրների հարաբերությունների արմատական առողջացման հիմքը և կյանքի կոչեց դրական պրոցեսներ Եվրոպայում և նրա սահմաններից դուրս: Չափազանցություն չէր լինի ասել, որ սովետա-արևմտագերմանական հարաբերությունների նորմալացումից էլ ծնվեց Եվրոպայում անվտանգության և համագործակցության համակարգ ստեղծելու հնարավորությունը:

Արդեն սկզբնական շրջանում սովետա-արևմտագերմանական այդ քաղաքական բնույթի պայմանագրին հետևեցին մի շարք համաձայնություններ, որոնց հիման վրա ծավալվեց երկու երկրների առևտրա-տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցությունը: Բավական է նշել, որ ՍՍՀՄ-ի հետ ունեցած առևտրի ծավալով ԳՖՀ-ն արևմտյան տերությունների շարքում



առաջինն է: Պետք է ասել, որ ինչպես սովետա-ամերիկյան, այնպես էլ սովետա-արևմտագերմանական հարաբերությունների նորմալացման պրոցեսում քաղաքական և տնտեսական հանգամանքները ակտիվ փոխգործողության մեջ են: Եթե քաղաքական հարաբերությունների բարելավումը նպաստում է տնտեսական և գիտա-տեխնիկական կապերի ընդլայնմանը, առևտրի զարգացմանը, ապա վերջիններս իրենց հերթին նպաստում են քաղաքական փոխըմբռնմանը:

1972 թվականի հուլիսի 5-ին ստորագրվեց առևտրի և տնտեսական համագործակցության վերաբերյալ երկարաժամկետ պայմանագիր, որն անմիջապես ուժի մեջ մտավ: Գործում է սովետա-արևմտագերմանական խառը հանձնաժողով՝ տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության գծով, որը կանոնավոր կերպով գումարում է նստաշրջաններ:

Տնտեսական կապերն իրականացվում են նաև կոոպերացման, համատեղ ուժերով ձեռնարկություններ կառուցելու ձևով: Մասնավորապես երկու երկրների համագործակցությամբ կկառուցվի խոշոր մետալուրգիական կոմբինատ Կուրսկի մագնիսական անոմալիայի շրջանում, որտեղ կկիրառվի երկաթը հանքանյութից ուղղակի ճանապարհով վերականգնելու տեխնոլոգիա, շրջանցելով դոմնային պրոցեսը: Կան նաև այլ համատեղ ծրագրեր:

Զարգանում է համագործակցությունը քիմիական արդյունաբերության, խաղաղ նպատակներով ատոմային էներգիան օգտագործելու, էլեկտրաէներգիայի արտադրության, ՍՍՀՄ-ի տարածքում հանքային հանածոների առանձին հանքավայրեր համատեղ կերպով յուրացնելու ասպարեզներում: Արևմտյան Գերմանիան ընդլայնում է նավթի ներմուծումը Սովետական Միությունից:

Ընդլայնվել են կապերը կրթության, սպորտի բնագավառներում, արհմիությունների, գիտական հիմնարկությունների միջև, համագործակցությունը քաղցկեղային և սիրտ-անոթային հիվանդությունները բուժելու հարցում:

1974 թվականին երկու երկրների ապրանքափոխանակության ծավալը կկազմի 2 միլիարդ ռուբլի, որը գրեթե չորս անգամ գերազանցում է 1971 թվականի և 50 տոկոսով՝ անցյալ տարվա մակարդակը: Չնայած դրան, ինչպես նշվեց Լ. Ի. Բրեժնևի և արևմտագերմանական կանցլեր Հելմուտ Շմիդտի՝ հոկտեմբերի 28—31-ին Մոսկվայում տեղի ունեցած հանդիպման ժամանակ, սովետա-արևմտագերմանական քաղաքական, առևտրա-տնտեսական և գիտա-տեխնիկական համագործակցության ներկա մակարդակը չի բավարարում կողմերին և կարոտ է հետագա ընդլայնման ու խորացման: Հելմուտ Շմիդտը, որը արևմտագերմանական կանցլերի պաշտոնում փոխարինեց Վիլի Բրանդտին, հայտարարեց, թե իր կառավարությունը հավատարիմ է Բրանդտի «արևելյան քաղաքականության» ոգուն:

Նա վերստին հաստատեց արևմտագերմանական ժողովրդի խաղաղության ձգտումը, հատկապես նշելով, որ նոր սերունդը՝ երիտասարդությունը, մերժում է ռևանշի և 2-րդ համաշխարհային պատերազմի արդյունքները վերանայելու գաղափարները: Համատեղ կոմյունիկեում կողմերը հայտարարեցին, որ կանեն իրենցից կախված ամեն ինչ Եվրոպական անվտանգության սիստեմ ստեղծելու համաեվրոպական խորհրդակցությունը, ինչպես նաև Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի և սպառազինության փոխադարձ, հավասարակշռված կրճատման վերաբերյալ Վիեննայում տեղի ունեցող բանակցությունները սեղմ ժամկետում և հաջողությամբ ավարտելու համար:

Կողմերը ստորագրեցին նոր պայմանագիր սովետա-արևմտագերմանական տնտեսական համագործակցության հետագա զարգացման վերաբերյալ: Երկու երկրների ղեկավարները համակարծիք են այն հարցում, որ տնտեսական շահերի փոխադարձ միահյուսումը, արդյունաբերական կոոպերացումը չեն կարող սահմանափակվել երկկողմանի համաձայնություններով և պետք է դրանց մասնակից դարձնել երրորդ երկրների: Այս կապակցությամբ նկատվեց, որ պաշտոնական կապերի հաստատումը Տնտեսական փոխօգնության խորհրդի և Եվրոպական տնտեսական համագործակցության միջև կհամապատասխաներ Եվրոպայի պետությունների տնտեսական հարաբերությունների զարգացման ու խորացման շահերին:

Ստորագրվեց նաև 3-րդ համաձայնությունը 1978—2000 թվականներին ՍՍՀՄ-ից Արևմտյան Գերմանիա մոտ 60 միլիարդ խորանարդ մետր բնական գազ մատակարարելու և գազի արդյունաբերության համար ԳՖՀ-ում մեծ տրամաչափի խողովակներ գնելու վերաբերյալ:

ԳՖՀ-ում սովետա-արևմտագերմանական հարաբերությունների նորմալացման երդվյալ թշնամիների դերում հանդես են գալիս քրիստոնեական դեմոկրատական միություն—քրիստոնեական սոցիալական միության կուսակցության գործիչները՝ Ֆրանց-Յոզեֆ Շտրաուսի գլխավորությամբ:

«Արևելյան քաղաքականությունը» ներկայացնելով որպես ազգային «շահերի առուծախ», «Նոր Վերսալ», նրանք փորձում են հիմնովին փոխել իրադարձությունների ընթացքը և Եվրոպան վերադարձնել դեպի «սառը պատերազմի» վտանգավոր հունը: Սակայն այդ ջանքերը հավանություն չեն գտնում ԳՖՀ բնակչության ճնշող մեծամասնության կողմից, որն իր վճռական խոսքն ասաց 1972 թ. նոյեմբերի 19-ին Բունդեստագի ընտրություններում՝ քվեարկելով Բրանդտ-Շեել կառավարական կոալիցիայի օգտին: Սովետա-արևմտագերմանական որպակես նոր հարաբերությունները հաջողությամբ շարունակվում են զարգանալ՝ դառնալով խաղաղության և համագործակցության կարևոր գործոն Եվրոպայում:

ԵՎՐՈՊԱՅՈՒՄ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ սիստեմ ստեղծելու խնդրում սկզբունքային նշանակություն ունեն սովետա-ֆրանսիական հարաբերությունները, որոնք զարգանում են ավանդական բարեկամության ոգով: Երկու կարևոր առանձնահատկություն բնորոշում են դրանց, ի դեպ նաև սովետա-ամերիկյան ու սովետա-արևմտագերմանական հարաբերությունների զարգացումը վերջին տարիներին:

Առաջինը՝ գործակից երկրների ղեկավարների հանդիպումների սիստեմատիկ և կոնկրետ բնույթը և երկրորդը՝ քաղաքականության ժառանգականությունը:

Հոկտեմբերի 28-ին լրացավ ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի միջև դիվանագիտական հարաբերությունների հաստատման 50 տարին: Հատկանշական է, որ երկու երկրներում էլ այդ իրադարձությանը տրվեց պատշաճ նշանակություն: Հիսուն տարի առաջ Ֆրանսիայի մինիստրների խորհրդի նախագահ և արտաքին գործերի մինիստր Էդուարդ Էրրիոն սովետական կառավարությանը հասցեագրած նոտայում գրում էր. «Հանրապետության կառավարությունը, հավատարիմ ռուս և ֆրանսիացի ժողովուրդներին միացնող բարեկամությանը, սկսած այս օրից, դե-յուրե է ճանաչում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կառավարությանը...»:

Հետագա տարիների, հատկապես 2-րդ համաշխարհային պատերազմի իրադարձությունները ապացուցեցին, որ նրանք, ովքեր անտեսեցին այդ ավանդական բարեկամությունը, գիտակցաբար, թե անգիտակցաբար դավաճանեցին Ֆրանսիայի ազգային շահերին: Այսօր էլ Եվրոպայում խաղաղություն և անվտանգություն ապահովելու տեսանկյունից ֆրանս-սովետական ավանդական բարեկամությունը սկզբունքային նշանակություն է ստանում: ՍՄԿԿ XXIV համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ նշվում է, որ սովետա-ֆրանսիական համագործակցությունը դրական մեծ դեր է խաղացել՝ նպաստելով Եվրոպայի և աշխարհի քաղաքական կլիմայի փոփոխմանը, շրջադարձին՝ առճակատման քաղաքականությունից դեպի միջազգային լարվածության մեղմացում:

Երկու երկրների քաղաքական հարաբերությունների հիմքերը շարադրված են 1971 թ. հոկտեմբերին Փարիզում ստորագրված փաստաթղթերում, որտեղ սովետա-ֆրանսիական համագործակցությունը հռչակված է որպես «մշտական քաղաքականություն նրանց հարաբերություններում և միջազգային կյանքի մշտական գործոն»:

Անշուշտ, այս ամենը չի բացառում տարակարծությունների առկայությունը երկու երկրների միջև:

Սակայն դա չէ բնորոշը այսօրվա Ֆրանսիայի համար: Գերիշխողը, ի վերջո, խաղաղ գոյակցության և բարեկամական համագործակցության ձգտումն է: Այն իր արտահայտությունն է գտնում նաև սովետա-ֆրանսիական տնտեսական, գիտա-տեխնիկական և մշակութային համագործակցության ոլորտում: Դա վերաբերում է ապրանքաշրջանառությանը (1973 թ. կազմել է 721,6 միլիոն ռուբլի, 1957 թ. 103,1 միլիոն ռուբլու դիմաց), ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելուն, տիեզերական տարածությունների հետազոտմանը, արտադրական-տեխնիկական կապերին:

Ստեղծված են սովետա-ֆրանսիական «մեծ» և «փոքր» խառը հանձնաժողովներ, հաջողությամբ գործում է սովետա-ֆրանսիական առևտրական պալատը: Մշակութային կապերն իրականացվում են լայն հիմքի վրա, ընդգրկելով գրքաշրջիկությունը, գիտության և արվեստի նվաճումների փոխանակումը, գիտնականների սիմպոզիումները, գիտա-մանկավարժական կադրերի վերապատրաստումը և այլն: Սովետա-ֆրանսիական բարեկամության ամրապնդման գործում մեծ ավանդ ունի «Ֆրանսիա—ՍՍՀՄ» հասարակական կազմակերպությունը:

Սովետա-ֆրանսիական հարաբերությունների հետագա ամրապնդման և խորացման համար կարևոր նշանակություն ունի Լ. Ի. Բրեժնևի և Ժիսկար դ՛ Էստենի աշխատանքային հանդիպումը, որ տեղի ունեցավ դեկտեմբերի սկզբին, Ռամբույեում: Ինչպես ասված է այդ առթիվ հրապարակված կոմյունիկեում, հանդիպումը տոգորված էր Սովետական Միության ու Ֆրանսիայի հարաբերություններին բնորոշ բարեկամության ու փոխըմբռնման ոգով և հաստատեց երկու երկրների միջև համաձայնության ու համագործակցության քաղաքականության ժառանգականությունը: Կոմյունիկեում սովետա-ֆրանսիական համագործակցությունը իրավամբ որակվում է իբրև աշխարհում լարվածության թուլացման պրոցեսի խորացման ու միջազգային անվտանգության ամրապնդման կարևոր մշտական գործոն: Ինչպես, այս նոր հանդիպումը ցույց տվեց, որ կողմերի տեսակետները միջազգային քաղաքականության մի շարք կարևոր հարցերում (Մերձավոր Արևելք, Հնդկաչին, Կիպրոս և այլն) կամ համընկնում են, կամ մոտ են միմյանց:

Ռամբույեի հանդիպման ժամանակ առանձնահատուկ ուշադրության առարկա էր Եվրոպայում անվտանգության սիստեմ ստեղծելու խնդիրը: Կողմերը նշեցին, որ կակտիվացնեն իրենց ջանքերը՝ կարճ ժամանակաշրջանում հաջողությամբ ավարտելու Ժնևում անցկացվող համաեվրոպական խորհրդակցության երկրորդ փուլը:

Սովետա-ֆրանսիական բանակցությունները նոր թափ հաղորդեցին երկու երկրների գործարար կապերի զարգացմանը: Ստորագրվեցին տնտեսական համագործակցության մասին պայմանագիր, որն ընդգրկում է 1974—1979 թթ. ժամանակամիջոցը, համաձայնագրեր՝ ՍՍՀՄ-ին ֆրանսիական մեքենաների ու սարքավորումների մատակարարումը վարկավորելու վերաբերյալ, Ֆրանսիային լրացուցիչ կերպով սովետական գազ մատակարարելու մասին, արձանագրություն՝ տնտեսության ու արդյունաբերության ասպարեզում համագործակցության ընդլայնման մասին:

Սովետա-ֆրանսիական հարաբերությունները տարբեր հասարակարգերի պատկանող պետությունների խաղաղ գոյակցության օրինակ են և խտացված ձևով արտացոլում են արդի միջազգային հարաբերություններում տեղի ունեցած շրջադարձային երևույթների ամբողջությունը:

***

Ուշադրությամբ ուսումնասիրելով Արևելքի և Արևմուտքի հարաբերություններում վերջին տարիներին տեղի ունեցած որակական տեղաշարժերը, դժվար չէ համոզվել, որ մենք գործ ունենք ոչ թե էպիզոդիկ երևույթների, այլ այդ հարաբերությունների նորմալացման անընդհատ ընդլայնվող և խորացող պրոցեսի հետ, որը պայմանավորված է մի շարք օբյեկտիվ պատճառներով: Ամենից առաջ այն արդյունք է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացման, որն ավելի ու ավելի է փոխում երկու սիստեմների ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի: Վճռորոշը միջազգային կնճռոտ հարցերում Սովետական Միության սկզբունքային դիրքն է, որը լիակատար պաշտպանություն է գտնում սոցիալիստական համագործակցության մյուս երկրների կողմից:

Հատկանշական է, որ սոցիալիստական ու կապիտալիստական երկրների միջև հարաբերությունների նորմալացումը կարող է տեղի ունենալ փոխըմբռնման հիման վրա: Ուստի, կարևոր էր նաև ռեալիստական տենդենցների ուժեղացումը արևմտյան պետական գործիչների քաղաքականության մեջ, նրանց կողմից հանդես բերած ժամանակի պահանջների ըմբռնումը: Այս հարցում պակաս դեր չխաղացին նաև Արևմուտքում սկիզբ առած էներգետիկ ճգնաժամը, վալյուտա-ֆինանսական քաոսը և ինֆլյացիան, տնտեսական այլևայլ դժվարությունները, որոնց հաղթահարման համար կապիտալիստական տերությունները հարկադրված են նորմալացնել իրենց գործարար կապերը սոցիալիստական երկրների հետ:

Ընդհանուր առմամբ Արևմուտքի և Արևելքի հարաբերությունների նորմալացման պրոցեսը «ուժի դիրքից» քաղաքականության լիակատար ձախողման և խաղաղ գոյակցության սկզբունքի հաղթանակի անհերքելի ապացույցն է, այն սկզբունքի, որ մշակվել է Վ. Ի. Լենինի կողմից, հետագա զարգացում ստացել կուսակցության փաստաթղթերում ու պրակտիկ գործունեության մեջ և վերստին հռչակվել որպես ՍՍՀՄ արտաքին քաղաքականության գլխավոր գիծ՝ ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագրում:

Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԵՏՆԱԲԱԿԵՐՈՒՄ

Վերջերս սովետահայ ընթերցողի գրադարանը հարստացավ պատմա-հրապարակախոսական մի նոր ուսումնասիրությամբ[1], որն իրոք օժտված է որոշակի արժանիքներով։

Գիրքը բաղկացած է ներածությունից ու հինգ գլուխներից։ Այն հանգամանքը, որ հեղինակն ու «Հայաստան» հրատարակչությունը վերոհիշյալ աշխատությունը նախատեսել են «Ընթերցողների լայն շրջանների համար», ամենևին չի նսեմացնում գրքի հեղինակի՝ Բ. Անանիկյանի գիտապոպուլյար էքսկուրսի օգտակար փորձը, որը, անկասկած, կոչված է նպաստելու դաշնակցության հակաժողովրդական էության բացահայտմանը, ընթերցող զանգվածների գաղափարաքաղաքական մտահորիզոնի ընդլայնմանն ու գիտելիքների հարստացմանը։

Հեղինակը գրքի ներածականում խիստ համառոտակի շարադրել է իր մտահղացման բուն ելակետ նպատակը և ուսումնասիրության մեթոդաբանական նկատառումները։ Նրա խնդիրն է եղել տալ «...դաշնակցության պատմա-փիլիսոփայության ու գործելակերպի մի քանի հանգուցային կողմերի քննական վերլուծությունը» (էջ 7)։ Իրավ է հեղինակը, որ սկզբից շեշտում է, թե դաշնակցությունը ո՛չ միայն անցյալում, այլև այսօր շարունակում է հուսահատական պայքարը հաղթանակած սոցիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի դեմ, և որ նա վաղուց «դարձել է հակակոմունիզմի ձայնափողը» ու գաղափարախոսական դիվերսիաներով հավատարմաբար ծառայում է միջազգային սև ուժերի, իմպերիալիզմի մարդատյաց դավերին։

Ահա թե ինչու աշխատավորության «...կոմունիստական դաստիարակության շահերը պահանջում են շարունակել սկզբունքային պայքարը դաշնակցության գաղափարախոսության դեմ, բացահայտել նրա հակագիտական ու ռեակցիոն էությունը» (էջ 7)։ Հիրավի, չնայած պատմական ժամանակաշրջանի վիթխարի փոփոխություններին, այդ կուսակցությունը հավատարիմ է մնացել կոմունիզմի երդվյալ թշնամիների բանակին։

Ճիշտ է վարվել հեղինակը՝ հատկապես շեշտելով անմոռաց Շահումյանի, նրա հայ զինակիցների, ապա և սովետահայ պատմաբանների, հրապարակախոսների դերը դաշնակցության ռեակցիոն գաղափարաբանության ու գործելակերպի մերկացման գործում։

Քննարկվող գրքի առաջին գլխում բավականին հանգամանորեն խոսվում է դաշնակցության դասակարգային էության մասին։ Այստեղ կարդում ենք. դաշնակցությունը «...բազմիցս փոխել է իր գույնը, հարկ եղած դեպքում օգնության է կանչել անցյալի ոգիներին, իրադարձությունների փոփոխմանը զուգընթաց անընդհատ մետամորֆոզի է ենթարկվել» (էջ 10)։ Այս հանգամանքն էլ, իրոք, սովորեցրել է այդ կուսակցության դասակարգային էությունն ու դժվարացրել նրա սոցիալական բնության ճիշտ ըմբռնումը։

Դասակարգայնությունը համարելով քաղաքական հոսանքի գնահատման ելակետը և դրա պրակտիկան՝ միակ որոշիչ չափանիշը, հեղինակը վկայակոչում է Վ. Ի. Լենինի այն հանրահայտ դրույթը, որի համաձայն «...չպետք է հավատալ խոսքերին, այլ ուսումնասիրել կուսակցությունների իսկական պատմությունը, ուսումնասիրել ոչ այնքան այն, ինչ որ ասում են կուսակցություններն իրենց մասին, այլ այն, ինչ անում են նրանք...» (էջ 11)։

Գրքի շարադրանքում ու վերլուծության մեջ հեղինակը հիմնականում այդպես էլ վարվել է. դաշնակցություն կուսակցության նպատակն ու գործելակերպը նա քննարկել է սոցիալ-պատմական կոնկրետ իրավիճակում, հասարակական շրջադարձային պարբերաշրջաններում, չանտեսելով հայ իրականության «յուրահատկություններն ու կոնկրետ պայմանները»։ Իր առաջացման սկզբնական շրջանում խոսքով սեթևեթելով նարոդովոլյան գաղափարների շուրջ, դաշնակցությունը շատ շուտ հրաժեշտ տվեց նարոդնիկությանը, լիովին անտեսեց հասարակական կյանքի ասպարեզ մտնող բանվոր դասակարգին, իր շարքերը լցրեց մանրբուրժուական ապոլիտիկ մարդկանցով։ Ճիշտ է, որ այդ մանրբուրժուական զանգվածը «...ոչ մի էական, վճռական դեր չի խաղացել այդ կուսակցության» ստրատեգիան ու տակտիկան մշակելիս։ Մինչդեռ, իրականում, շեշտում է Բ. Անանիկյանը, դաշնակցության «...կուսակցությունն իր հիմնադրման օրվանից եղել է բուրժուա-նացիոնալիստական կուսակցություն, և նրա էվոլյուցիան կատարվել է միայն նրա բուրժուականության և ռեակցիոնության խորացման ուղիով» (էջ 25)։

Հեղինակը տեղին է վկայակոչում Մ. Նալբանդյանին, որը «կտրականապես մերժում էր եվրոպական միջամտությունը հայ ժողովրդի գործերում, գտնելով, որ նա չի կարող ազգային ազատագրություն բերել հայ ժողովրդին։ Նրա հայացքը հառած էր հյուսիսին, և այնտեղից էր նա սպասում հայ ժողովրդի փրկությունը» (էջ 28)։

Այնուհետև, ելնելով Վ. Ի. Լենինի ծրագրային հետևությունից (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 175), հեղինակը եզրահանգում է. «...Լենինը, ինչպես ազգային ազատագրական մյուս շարժումների, այնպես էլ «հայկական հուզումների» մեջ տեսնում էր պրոգրեսիվ բովանդակություն, չնայած այն բանին, որ այդ շարժման մեջ գլխավոր դասակարգը, ղեկավար ուժը բուրժուազիան էր։ Արևմտահայաստանում հայկական շարժումներն ունեին նաև իրենց յուրահատուկ կողմը։ Այստեղ ո՛չ միայն թույլ էր դեռևս դասակարգային շերտավորումը, այլև վտանգի տակ էր դրված ամբողջ ազգի ֆիզիկական գոյությունը» (էջ 30)։

Մեկնելով լենինյան այն ճշմարտացի ըմբռնումից, որ ազգային-ազատագրական շարժման վերընթացի ժամանակ տիրապետող իդեոլոգիան «...խոր հետքեր է թողել մանր բուրժուազիայի զանգվածներում և պրոլետարիատի մի մասի մոտ», իմպերիալիզմի շահերի պաշտպանները և սոցիալիզմի թշնամիները չարաչար օգտագործում են այդ իդեոլոգիան ո՛չ միայն պրոլետարական հեղափոխական շարժումը պառակտելու, այլև ազգայնականության շմոլքով համակված մանր բուրժուազիային իրենց հետևից քարշ տալու համար։

Ժամանակին անդրադառնալով սույն խնդրին և, հատկապես, արևմտահայության ազատագրման դաշնակցական ծրագրին, Ստ. Շահումյանը գրել է. «Մենք ասել ենք նրանց, դուք, պարոննե՛ր, հայ ազգի համար կույր առաջնորդներ եք (ընդգծումը մերն է— Զ. Կ.)։ Դուք ունեք բարի ցանկություններ, բայց ձեր գործերը, ձեր ճանապարհը կործանարար են հայ ժողովրդի համար» (էջ 31)։ Ստ. Շահումյանի սույն բնորոշումն իրականացավ։ Իսկ «կույր առաջնորդները» չըմբռնեցին իրենց գործելակերպի վնասակարությունը։ Օսմանյան կայսրության պալատը փուլ եկավ դժբախտ հայության գլխին, բնաջնջելով նրա կեսը, իսկ դաշնակցությունն իր գործողություններով նպաստեց այդ ողբերգության համապարփակ դառնալուն։

Պատմական իրողությունն այն է, որ «...հայ բոլշևիկները ամենից շատ էին մտահոգված արևմտահայության ճակատագրով և ո՛չ միայն երբեք չեն դատապարտել սուլթանական բռնակալության դեմ նրա մղած ազատագրական պայքարը, այլ ընդհակառակը, ողջունել են այն և մատնանշել այդ պայքարի հաջողության հնարավոր ուղիները»։ Հեղինակի այս էական եզրակացությունը խարսխված է բոլշևիկյան «Պրոլետարիատի կռիվը» լրագրի 1903 թ. №№ 2, 3-ում զետեղված նյութի վրա։

Մերկացնելով հայ բուրժուազիայի դրոշով հանդես եկող դաշնակցության արկածախնդրական տակտիկայի սնամեջությունն ու վնասակարությունը՝ Բ. Անանիկյանը տեղին է վկայակոչում ակադեմիկոս Ա. Հովհաննիսյանի այն արժեքավոր հետևությունը, որ փաստորեն դաշնակցության և հայ բուրժուազիայի այլ կազմակերպությունները «...հրահրում էին թուրքահայ մասսաների ապստամբական ելույթները սոսկ որպես պետությունների զինական կամ դիվանագիտական միջամտությունն առիթելու միջոց։ Թուրքահայ ժողովրդի բախտը ստորադրվում էր իմպերիալիստական քաղաքականությանը, որի վարքագիծը հանգում էր ոչ թե թուրքահայերի ազա-

1 Բ. Հ. Անանիկյան. Դաշնակցության գաղափարական-քաղաքական կրախը, «Հայաստան» հրատ., 408 էջ, 1974 թ.։

# ԴՊՐՈՑԻ ԳԵՂԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ*

ՍՄԿԿ XXIV համագումարը նոր մարդու դաստիարակության հարցը համարեց կուսակցության գլխավոր նպատակներից մեկը, որը բովանդակում է բազում պրոբլեմներ՝ կապված անձնավորության ներդաշնակ զարգացման հետ։ Այդ խնդիրներից էական են անհատի գեղագիտական ձևավորումը, նրա կողմից իրականության էմոցիոնալ ընկալման հնարավորությունների հարստացումը։

Գոհունակությամբ պետք է նշել, որ այժմ գեղագիտական դաստիարակության հարցերը դադարել են սոսկ տեսաբանների ուսումնասիրության առարկա լինելուց և ամենուր ներթափանցել են ժողովրդական կրթության ոլորտները։ Նման իրողությունը պահանջում է չբավարարվել միայն տեսական գեղագիտության մշակման պրոբլեմներով, խորապես լուսաբանել գեղագիտական դաստիարակության գործնական խնդիրները։ Ահա ինչու բոլոր նրանք, ովքեր ձեռնարկել են գեղեցկի տարածմանը ժողովրդական զանգվածների լայն շրջաններում, չթուլացող ուշադրությամբ հետևում են մամուլին, գիտական հրապարակումներին՝ գտնելու նոր մտքեր, առաջարկներ, գեղագիտական դաստիարակության հիմունքների վերաբերյալ։

Գեղագիտական դաստիարակության հարցերին նվիրված գրականության մեջ հիմնականում շեշտը դրված է պրոբլեմի հասարակական նշանակության վրա, և անբավարար են մշակված խնդրի բուն էությունը, գեղեցկին հաղորդակցվելու ուղիները։ Հարկ է նկատել, որ կենտրոնական հրատարակչությունները նշված հարցերի վերաբերյալ սակավադեպ են ընթերցողին ներկայացնում ուշագրավ աշխատություններ։ Ինչ խոսք, մեզ մոտ նույնպես որոշ գործ արվել է, սակայն կատարվածը առաջին քայլերն են միայն։ Երկար սպասումից հետո հրապարակ եկավ շատ ուսանելի մի աշխատություն՝ Ռ. Աթայանի Աշակերտների գեղագիտական դաստիարակությունը, որը ո՛չ միայն գեղագիտական դաստիարակության հիմունքների ձեռնարկ է, այլև գեղեցկի բացահայտման ու արժեքավորման, այն նկատելու, ընկալելու և յուրացնելու ինքնատիպ ուսումնասիրություն։ Գեղագիտականն այստեղ արծարծված է ոչ բոլոր առումներով, սակայն հետազոտված հարցերն այնքան հանգամանորեն են լուսաբանված, որ, անտարակույս, արձագանք կգտնեն, մասնավորապես, աշակերտության և ուսուցչության շրջանում։ Հեղինակին հաջողվել է գեղագիտական արժույթները բնութագրել մանկավարժա-հոգեբանական վերլուծմամբ, ինչպես և արվեստի առանձին տեսակների առանձնահատկությունների մեկնաբանմամբ։

Հայտնի է, որ քաղաքակրթության զարգացման բոլոր փուլերում մարդկանց, սերունդներին հուզել է գեղագիտական դաստիարակության պրոբլեմը։ Սակայն յուրաքանչյուր ժամանակաշրջան, ելնելով գերիշխող դասակարգի սոցիալ-քաղաքական նկարագրից, առաջադրել է գեղագիտական դաստիարակության իր ծրագիրը։

Անվիճելի է, որ նախասոցիալիստական հասարակարգում էսթետիկական դաստիարակության ոլորտն էին ներգրավվում հիմնականում իշխող դասակարգերը։ Միայն հասարակության սոցիալիստական հեղաբեկման շնորհիվ աշխատավոր մարդու համար գեղեցիկը պատրանքից վերածվեց իրողության՝ ժողովրդական զանգվածները հնարավորություն ստացան հաղորդակցվելու գեղագիտական արժույթներին։ «Արվեստը,— նկատել է Վ. Ի. Լենինը,— պատկանում է ժողովրդին։ Իր ամենախոր արմատներով նա պետք է ներթափանցի ժողովրդական ամենալայն զանգվածների խորքերը։ Այն պետք է միավորի այդ մասսաների զգացմունքը, միտքը և կամքը, բարձրացնի նրանց»։ Սովետական իշխանության արշալույսին հրապարակված «Միասնական աշխատանքային դպրոցի կանոնադրության» մեջ մասնավորապես ընդգծված էր աշխատավորների էսթետիկական զգացողության, ճաշակի, նրանց ստեղծագործական ունակությունների զարգացման, գեղեցիկն ըմբոշխնելու, գեղեցկից հաճույք ստանալու, գեղեցիկն արարելու կարողության ստեղծման անհրաժեշտությունը։ Նոր աշխարհի հիմնումն ազդարարող այս տողերը վառ կերպով բնութագրում են սոցիալիստական հասարակարգի հումանիզմը, նրա գեղագիտական իդեալը։

Ճիշտ է, ցարիզմից ժառանգված հետամնաց տնտեսությունը, ինդուստրացման լարված տարիները, ապա՝ պատերազմը անբարենպաստ էին ժողովրդի գեղագիտական դաստիարակության համար։ Սակայն այդ տարիներին նույնպես բարձրանում էր ժողովրդի հոգևոր մակարդակը, գեղարվեստը դանդաղ, բայց հաստատուն մուտք էր գործում աշխատավոր մարդկանց կենցաղում։

Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում նոր լիցք ստացավ ժողովրդի հոգևոր կյանքը, լայն հեռանկարներ բացվեցին աշխատավորության հոծ զանգվածների համար՝ մերձենալու մշակույթի երբեմնի իրենց անհաս բարձունքներին, հաստատելու նոր ապրելակերպ։ Կյանքին համընթաց զարգանում ու կատարելագործվում էին դպրոցը, աճող սերնդի դաստիարակության բովանդակությունն ու ձևերը։ Գեղագիտական դաստիարակության հարցերն արժանացան պետական հոգածության, ընդունվեցին կառավարական համապատասխան որոշումներ։

Վեր հանելով լուսաբանվող հարցի հասարակական նշանակությունը՝ հեղինակն ընթերցողին աստիճանաբար պարզաբանում է էսթետիկական դաստիարակության բովանդակությունն ու շրջանակները։ Գեղագիտականով դաստիարակված անհատը գեղեցկի պասիվ հայեցողը չէ, նա ակտիվ վերաբերմունք ունի կյանքի հանդեպ և, ինչպես նշված է գրքում, ջանում է իր անձնական օրինակով և եռանդուն ներգործությամբ փոխել այն ամենը, ինչ տգեղ է կյանքում, շրջապատում, անխոնջ ու անդադրում գործել հանուն իրականության գեղեցկացման։ Մատաղ սերնդին սովորեցնել տեսնել և լսել, զգալ ու վայելել, ապա նաև ստեղծել գեղեցիկը. դա է գեղագիտական դաստիարակության առաջնահերթ խնդիրը։

Գեղագիտականն անեզր է, համապարփակ։ Այդ իսկ առումով անհրաժեշտ է գիտականորեն մեկնաբանել շրջապատի, հասարակական ու առարկայական միջավայրի էսթետիկական ներգործության յուրահատկությունները։ Գրքում ծավալուն խորհրդածություններ կան միջավայրի գեղագիտական ընկալման վերաբերյալ. ավելին, ցույց են տրված աշակերտության վրա շրջապատի ներազդման դրական ու բացասական հնարավոր հետևանքները։ Միջավայրը դիտելով իբրև մանկավարժական ներգործության որոշակի օբյեկտ՝ դպրոցը, մանկավարժական կոլեկտիվը կոչված են սովորողներին հաղորդակից դարձնելու շրջապատի դրական արժույթներին, նրանց զերծ պահելու խոտելի երևույթներից։

Բնակավայրը, փողոցը և մյուս գործոնները, որ մանկուց ներազդում են անձնավորության վրա, խոր հետք են թողնում մարդու ներաշխարհում։ Այս ասպարեզում ևս մեծ անելիքներ ունի դպրոցը։

Ուշագրավ են հեղինակի դատողություններն աշակերտի և ուսուցչի արտաքին տեսքի վերաբերյալ։ Զանցելով գեղեցկության քաղքենիական ըմբռնումը՝ նա ճիշտ է նկատում, որ աշակերտների շրջանում երբեմն ծայր է առնում թանկարժեք կամ նորաձև հագուստ ձեռք բերելու յուրահատուկ մրցություն։ Ուսուցչի կողմից նման միտումի հանդեպ բացահայտ բացասական վերաբերմունքի դրսևորումը կարող է ցանկալի ներազդեցություն չունենալ դասարանի վրա։ Այստեղ վճռականը տրամաբանված, կյանքից ու գեղարվեստից քաղված համոզիչ փաստերի լըրջախոհ մեկնությունն է և, անտարակույս, անձնական օրինակը։

Որքա՜ն տեղին ու անհրաժեշտ են վարվեցողության գեղագիտությանը նվիրված խորհրդածությունները։ Հասարակական միջավայրում, մարդկային հարաբերություններում էսթետիկական գործոնը լուրջ միջոց է հասարակական և անհատական առնչությունների կարգավորման համար։ Այն բնագավառն է այս, ուր մարդկանց վարքագիծն արժեքավորվում է գեղեցկի չափանիշներով։ Աշակերտության շրջանում գեղեցկի վերաբերյալ դատողությունները մերկապարանոց կհնչեն, եթե լայն տեղ չհատկացվի դասական արվեստի ստեղծագործություններից վերցված նմուշների հանգամանալի քննարկմանը։ Նման պահին հարկ է ստեղծել անկաշկանդության այնպիսի մթնոլորտ, որ աշակերտներն առավել անմիջական լինեն, պատրաստ՝ արտահայտելու իրենց համակող խոհերն ու զգացմունքները։

Գեղագիտականի նախահիմքերը հաստատվում են վաղ տարիքում։ Մանկապարտեզը, տարրական դասարաններն այն օղակներն են, որտեղ երեխաները հաղորդակցվում են գեղեցկին, արվեստի նմուշներն ընկալելու պրոցեսում նրանց մեջ մշակվում է ակտիվ վերաբերմունք։

Դպրոցում ավանդվող բոլոր առարկաները գեղագիտական ներգործության կոմպոնենտներն են և մեծապես նպաստում են աշակերտության ներդաշնակ զարգացմանը։ Հասկանալի է, որ ուսուցման համակարգում, գեղագիտական դաստիարակության բնագավառում առանձնահատուկ է մայրենի գրականության դերը։ Այն աշակերտներին ծանոթացնում է հարազատ ժողովրդի պատմությանը, նրա խոսքի դարավոր մշակույթին և հոգեկան աշխարհին, արթնացնում գեղագիտական հույզեր, բարոյական վսեմ ըմբռնումներ։ Ճիշտ է նկատում հեղինակը. գրականությունը մարդու հոգեկան կյանքը, նրա հույզերի, զգացմունքների աշխարհը համակողմանի արտացոլող արվեստ է, որը ներգործում է գեղեցիկ, պատկերավոր, հուզաթաթավ, երաժշտական խոսքի միջոցով։ Տվյալ սահմանման ճշմարտացիությունը հաստատող օրինակ է գրականության դասի վերլուծությունը՝ նվիրված Ակսել Բակունցի «Ալպիական մանուշակի» ունկնդրմանը և

* Ռաֆայել Աթայան. Աշակերտների գեղագիտական դաստիարակությունը, «Լույս» հրատ., Երևան, 1974։

ու ճաշակ պատվաստելը կերպարվեստի դասերի, հատկապես գեղազարդման արվեստի ուսուցման օրգանական մասը պետք է լինի։ Կերպարվեստի կիրառական արժեք ունեցող ճյուղերը կամ բաժինների ուսուցելիս էլ,— զգուշացնում է հեղինակը,— գեղեցկի զգացողությունը, գեղարվեստական այն հաճույքը, որ աշակերտներն ստանալու են այդ պարապմունքներից, կոչված են խթանելու ջանասիրությունը, և՚ դա չպետք է աչքաթող արվի։

Աշխատության եզրափակիչ բաժնում, որը կրում է Գեղագիտությունը և ուսուցիչը խորագիրը, հեղինակը քննում է դաստիարակի անձնավորությանը, ուսուցչի և երեխայի անհատականությանը վերաբերող հարցերը։ Ձնայած հեղինակի՝ դրանց վերաբերող դատողություններն աքսիոմատիկ ճշմարտություններ են, բայց այստեղ ստանում են նոր հնչեղություն, վերաիմաստավորվելու նոր մեկնակետեր։ Իրոք, երբ խոսում ենք ուսուցչի մասին իբրև մի մարդու, որ գեղեցկի զգացողություն և ճաշակ է կրթելու աշակերտների հոգում, ապա ամենից առաջ նկատի ունենք նրա մարդկային արժանիքները, նրա բարոյական նկարագիրը, այն ամենը, ինչ հեղինակություն ու հմայք է հաղորդում նրան, աշակերտների աչքում դարձնելով մի իդեալ, որի անձնական օրինակն անդիմադրելի դաստիարակիչ ուժ ունի։ Աշակերտի անհատականությունը ճանաչելը սոսկ վերացական խնդիր չէ մանկավարժի համար։ Այդ, կարդում ենք գրքում, նշանակում է՝ ամենից առաջ իմանալ, թե ինչի՞ է ունակ նա, ինչո՞վ է օժտել նրան բնությունը, ի՞նչ է ժառանգել նա ծնողներից և ի՞նչ կարելի է սպասել նրանից, ի՞նչ անակնկալներ և ինչպիսի՞ սլացք՝ իր հոգեկան ու մտավոր զարգացման ճանապարհին։ Սակայն ինչ-որ տեղ երեխան «ինքն իր մեջ է», դժվարությամբ է բացահայտվում կամ հետագայում այլ պարագաներում նախապես անիմանալի հատկանիշներ է ձեռք բերում։ Դաստիարակությունը միագիծ պրոցես չէ, այն պահանջում է ուսուցչի անդուլ համբերություն ու սխրանքը։ «Չկորցնել ոչ մի նոր ծնված տաղանդ»— Ա. Վ. Լունաչարսկու այս կոչը սոցիալիստական հասարակարգի ստեղծումը հռչակող ազդագիր էր, սոցիալական նոր գոյաձևը բնորոշող հումանիստական խորհրդանիշ։ Դժվար է համաձայնել հեղինակի չափից ավելի լավատեսական եզրակացությանը՝ «Եթե քսանական թվականներին պետք էր որոնումներ կատարել՝ գտնելու համար տաղանդավոր անհատներ արվեստի այս կամ այն ճյուղի մեջ, ապա ներկայումս այդ չէ հարցը։ Այսօր արդեն պետք է գործել այն հաստատ համոզմունքով, որ մարդ ծնվում է տաղանդավոր ստեղծագործող դառնալու համար» (էջ 194)։ Իհարկե, սոցիալիստական հասարակարգում առկա են բարենպաստ պայմաններ շնորհաշատ մարդկանց ունակությունների դրսևորման համար։ Սակայն փաստը մնում է փաստ— տաղանդները բացառիկ երևույթ են։

Հնարամիտ դասատուները, ծանոթանալով իրենց դասարանների աշակերտների հետ, հատկապես սկզբնական շրջանում, ոչ այնքան ձգտում են ճշտորոշել յուրաքանչյուրի անձնական ունակությունները, որքան նպաստավոր մթնոլորտ ստեղծել՝ դրսևորելու երեխաների ձիրքը, շնորհքը։ Անշուշտ, անհրաժեշտ է գրվատել խոստումնալից երեխաների հաջողությունները, միաժամանակ խրախուսել մյուսներին, քաջալերել։ Ամենակարևորը՝ շնորհալիներին պետք է զերծ պահել մեծամտանալու, ինքնաթմբկահարման միտումից։ Ճշմարիտ է ասված՝ անհրաժեշտ է հարգալից վերաբերվել յուրաքանչյուր աշակերտի անհատականությանը, վստահություն տածել նրա կարողությունների նկատմամբ, խրախուսել ինքնուրույնությունը, զարգացնել գեղեցկի զգացումը և սովորեցնել գեղեցկին ձգտել ամեն տեղ— բնության մեջ, կյանքում, մարդկային հարաբերություններում։ Անձնավորության ներաշխարհի հուզական շաղախի մշակումը մանկավարժական արվեստի ամենանուրբ ոլորտն է, որը պետք է հարազատ լինի բոլոր առարկաների դասատուներին։ Աշակերտությանը հաղորդակից դարձնելով գեղեցկի աշխարհին, նրանց մեջ միաժամանակ ներարկվում են բարոյական, մարդասիրական վեհ հատկանիշներ։ Ցավոք, բուրժուական ապրելակերպի որոշ մնացուկներ մոլախոտերի պես տեղ են գտել մեր կյանքում և միշտ չէ, որ դրանց դեմ ծավալվում է սկզբունքային, անզիջում պայքար։ Միայն սոցիալիստական ապրելակերպի գեղագիտական սկզբունքների յուրացումն ու կենսագործումը մեծ չափով կօգնեն՝ հաղթահարելու մեր իրականության մեջ տեղ-տեղ նկատվող հին աշխարհի բարքերը։ Հիրավի, տեղին են Վահան Տերյանի իմաստուն խոսքերը. «Չկամենանք չքեղ շենքերի հայրենիք դարձնել մեր հայրենիքը, հոգու և մտքի հպարտությամբ ճոխացնենք նրան»։

Անշուշտ, հեղինակի այս գրքում կան նաև մերժելի տեղեր, անավարտ, միջանկյալ մտքեր։ Խոսքս հիմնականում վերաբերում է նախասովետական հայ դպրոցին, կամ այն ժամանակվա գրական աղբյուրներից կատարված մեջբերումներին։ Եթե հեղինակը բերված հիշատակությունները գտնում է անհրաժեշտ, ապա ցանկալի է, որ այդ բոլորն ավելի հանգամանորեն շարադրվեին մի առանձին գլխում և ոչ թե պատառիկների ձևով՝ հիմնական շարադրանքում։ Իհարկե, նման ցանկությունները կարելի է շարունակել։ Սակայն այն, ինչ տվել է հեղինակը, թույլ է տալիս անվարան ասել՝ հրապարակվել է դպրոցի համար հույժ շահեկան մի գիրք։

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1974 Թ. ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ՍՄԿԿ ԽՍՆՏԿՈՄԻ ԿՈՉԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ԳՈՐԾՈՎ



## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ







## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ, ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ, ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



## ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՀԱՅԵՑԱԿԵՏՈՎ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



## ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

# ՄԵՐ ԸՆԿԵՐՈՋ ՀԻՇԱՏԱԿԻՆ



Մահը մեր շարքերից խլեց հնագույն լրագրող, «Լենինյան ուղիով» ամսագրի պատասխանատու քարտուղար Վանիկ Հայրապետի Գևորգյանին: Երիտասարդ հասակից ոտք դնելով պարբերական մամուլի ասպարեզը, նա մինչև իր կյանքի վերջը հավատարիմ մնաց կոմունիստ լրագրողի վեհ կոչմանը:

Վ. Հ. Գևորգյանը ծնվել է Նոր Բայազետում (Կամո) 1912 թ.: Քսան տարին հազիվ բոլորած, նա նշանակվում է Նոր Բայազետի շրջանային թերթի պատասխանատու քարտուղար, իսկ հետագայում երկար տարիներ աշխատում որպես նույն թերթի խմբագիր: Այդ տարիներին ակնհայտորեն դրսևորվում են Վ. Գևորգյանի՝ որպես հմուտ լրագրողի, ունակությունները ու ձիրքը, կոմունիստին հատուկ սկզբունքայնությունը:

1951 թ. մինչև իր կյանքի վերջը Վ. Հ. Գևորգյանը աշխատում էր մեր խմբագրությունում՝ որպես ամսագրի պատասխանատու քարտուղար, միաժամանակ հանդիսանալով խմբագրական կոլեգիայի անդամ: Նա իր ստեղծագործական ամբողջ եռանդն ու ունակությունները նվիրում էր ամսագրում լուսաբանելու ՍՄԿԿ լենինյան քաղաքականությունը, այն հարցերը, թե կուսակցական կազմակերպությունները ու աշխատավորները ինչպես են իրագործում կոմունիստական շինարարության խնդիրները: Վ. Գևորգյանն աչքի էր ընկնում կոլտնտեսային շինարարության տեսական ու գործնական հարցերի իր լավատեղյակությամբ, նրա գրչին են պատկանում այդ խնդիրների լուսաբանմանը նվիրված մի շարք գրքույկներ ու հոդվածներ: Մշտապես զբաղված լինելով ամսագրի պատասխանատու քարտուղարի պարտականությունների կատարմամբ, նա այդ ամենը հաջողությամբ զուգակցում էր գիտական գործունեության հետ: 1971 թ. Վ. Գևորգյանն արժանացավ տնտեսագիտության թեկնածուի գիտական աստիճանի:

Վ. Հ. Գևորգյանը մինչև իր կյանքի վերջը հավատարմորեն ծառայեց կուսակցության գործին, նա վայելում էր ընկերների հարգանքը:

Կոմունիստ լրագրողի, ազնիվ ընկերոջ հիշատակը ընդմիշտ կմնա նրան ճանաչողների սրտերում:

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 06899 Պատվեր 1921 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ՝ 13.400 Գինը 20 կ.:

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 12/XII 1974 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:



СОДЕРЖАНИЕ

Գինը՝ 20 կ.  Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՔԼՈՐ + ԱՐԾԱԹ

Խմելու ջրի վնասազերծման համար ամենից հաճախ օգտագործվում է քլորը: 1 մգ/մլ խտության դեպքում աղիքային ինֆեկցիայի հարուցիչները ոչնչանում են մոտ երկու ժամում: Այդ նպատակին կարող է ծառայել և արծաթը, որի 0,1—0,2 մգ/մլ քանակությունը մեկ ժամից ոչնչացնում է ամենակայուն միկրոօրգանիզմները: Սակայն առավել արդյունավետ է քլորի և արծաթի համատեղ ներգործությունը: Այդ էլեմենտների նույն քանակությունը պարունակող ջրում հիվանդահարույց միկրոօրգանիզմները ոչնչանում են 5—30 րոպեում: Անշուշտ, այդ մեթոդը պիտանի չէ ջրմուղի ջրի վնասազերծման համար, բայց կարելի է օգտագործել ոչ մեծ քանակությամբ ջուր պահանջվող վայրերում. նավերում և էքսպեդիցիաներում:

## ԼԱԶԵՐԱՅԻՆ ԿԻՆԵՍԿՈՊ

ՍՍՀՄ ԳԱ Պ. Լեբեդևի անվան ֆիզիկայի ինստիտուտի քվանտային ռադիոֆիզիկայի լաբորատորիայում ակադեմիկոս Ն. Բասովի ղեկավարությամբ ստեղծվել է արտասովոր կինեսկոպ: Ի տարբերություն սովորական հեռուստացուցային խողովակի, այն չունի լյումինոֆորային էկրան: Լուսավորող նյութի փոխարեն օգտագործվում է կիսահաղորդչային նուրբ (սանտիմետրի մեկ հազարերորդ մասը) թիթեղ: Էլեկտրոնային ճառագայթը, սահելով այդ թիթեղի վրայով, գեներացնում է այն և ստիպում ճառագայթել լույս: Պատկերի մեծությունը պայմանավորված է կիսահաղորդչային թիթեղի չափերով, գույնը՝ կիսահաղորդչի քիմիական կազմությամբ: Գիտնականների հաշվումներով, այդ տիպի լազերի հիման վրա կարելի է ստեղծել ոչ միայն հեռացույցի նոր սիստեմ, այլև կինո: Լազերային կինեսկոպը լայնորեն կկիրառվի նաև հաշվիչ տեխնիկայում, կառավարման սիստեմներում:

## ՄԱՇԿԻ ՔՍՈՒՔԸ ԲՈՒԺՈՒՄ Է ԱՏԱՄՆԵՐԸ

Հանրահայտ է ֆտորի և դրա միացությունների պրոֆիլակտիկ նշանակությունը ռևմատիկ հիվանդությունների և ատամների կարիեսի դեպքում: Շատ երկրներում փորձել են ֆտոր խառնել խմելու ջրին, ինչպես և ատամնապաստային ու ատամնափոշուն:

Հունգարական մասնագետներ՝ բժիշկ Ս. Բալոլա-Սաբը և դեղագործ Ի. Պուշկը պարզել են, որ օրգանիզմը ֆտորը ներծծում է առավելապես մաշկի միջոցով: Դրա հիման վրա նրանք հայտնագործել են կարիեսի բուժման նոր մեթոդ— մաշկին քսվում է ֆտոր պարունակող կրեմ: Այդ մեթոդով այժմ արդեն բուժվել են ավելի քան 30.000 հիվանդներ:

## ԼԻՖՏՈՎ ՊԱՀԱՐԱՆ

Արևմտագերմանական «Циппель» ֆիրման առաջարկում է հատուկ կառուցվածքի պահարան՝ գրանցման կետերում, գրադարանում, արխիվում անհրաժեշտ նյութերի որոնումը հեշտացնելու համար: Նման պահարաններում դարակները վեր ու վար են փոխադրվում հատուկ սարքի օգնությամբ, որը նման է մետրոյի էսկալատորին: Բավական է սեղմել պուլտի հարկը նշող կոճակը, և անհրաժեշտ դարակը կկանգնի օպերատորի առաջ:

## «ԿԵՐՈՍԻՆԸ ՔԻՉ, ՋՈՒՐԸ՝ ՇԱՏ...»

Ամերիկյան պրոֆեսոր Յուբենկը մշակել է բենզինա-ջրային էմուլսիա պատրաստելու եղանակ: Էմուլսիան գլանի մեջ է մտնում մաքուր բենզինի փոխարեն: Բենզինի մեջ ջուրը կարող է լինել 15—30 տոկոս, բստ որում բավականին իջնում է թունավոր նյութերի քանակը շարժիչների արտամղվող գազերի մեջ: Յուբենկի կարծիքով, ջուրը բենզինին խառնելը մոտորների արդյունավետության աճման շատ ավելի էժան միջոց է, քան բենզինի օկտանային թվի բարձրացումը: Նոր եղանակը ստուգվել և տվել է լավ արդյունք: